Լ. Ս. ԱԹԱՆԱՍՅԱՆ, Վ. Ֆ. ԲՈՒՏՈՒԶՈՎ,
Ս. Բ. ԿԱԴՈՄՑԵՎ, Է. Գ. ՊՈԶՆՅԱԿ, Ի. Ի. ՅՈՒԴԻՆԱ

# ԵՐԿՐԱՉԱՓՈՒԹՅՈՒՆ 7

Հանրակրթական դպրոցի
7-րդ դասարանի դասագիրք





ԵՐԵՎԱՆ, «ԱՍՏՂԻԿ-59», 2000թ.

ԴՏՀ 373.167.1+514(075)
ԳՄԴ 22.151g72
Ե 894

**ԴԱՍԱԳԻՐՔԸ ՀԱՍՏԱՏՎԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ԵՎ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ**

Թարգմանված է ռուսերեն 9-րդ հրատարակությունից: Դասագիրքը համապատասխանեցված է առարկայական ծրագրին, օգտագործվել են «*Просвещение* » հրատարակչության տրամադրած լրացուցիչ նյութերը:

*Թարգմանությունը, փոխադրումը և խմբագրումը՝* Ս. Է. Հակոբյանի

*Մեթոդիստ՝* Ռ. Ս. Խաչատրյան

*Հրատարակության խմբագիր և խորհրդատու՝* Գ. Ա. Ղարագեբակյան

Ե 894 **Երկրաչափություն:** Հանրակրթական դպրոցի 7-րդ դասարանի դասագիրք / Լ. Ս. Աթանասյան, Վ. Ֆ. Բուտուզով, Ս. Բ. Կադոմցև և ուրիշ.; /թարգմ. և խմբ. Ս. Է. Հակոբյան. --Եր., Աստղիկ-59, 2000, -128 էջ:

Ե $\frac{4306020502}{860(01)-2000}$ 2000 թ.

ԳՄԴ 22.151g72

© «*Աստղիկ-59*» հրատարակչություն, 2000թ.
© Թարգմ., խմբ. Ս. Է. Հակոբյան, 2000թ.
© «*Просвещение*» հրատարակչություն, 1999թ.
Все права защищены
Բոլոր իրավունքները պաշտպանված են

ISBN 99930-857 2-3

## ԳԼՈՒԽ VI

# ՔԱՌԱՆԿՅՈՒՆՆԵՐ

## § 1 ԲԱԶՄԱՆԿՅՈՒՆՆԵՐ

**1 Բազմանկյուն:** Դիտարկենք մի պատկեր, որը կազմված է $AB$, $BC$, $CD$, …, $EF$, $FA$ հատվածներից այնպես, որ *կից* հատվածները, այն է՝ $AB$ և $BC$, $BC$ և $CD$, …, $FA$ և $AB$ հատվածները, չեն գտնվում մի ուղղի վրա, իսկ ոչ կից հատվածները ընդհանուր կետ չունեն: Այդպիսի պատկերը կոչվում է *բազմանկյուն* (նկ. 1): $A$, $B$, $C$, … $E$, $F$ կետերը կոչվում են բազմանկյան *գագաթներ*, իսկ $AB$, $BC$, $CD$, …, $EF$ հատվածները՝ *կողմեր*: Բոլոր կողմերի երկարությունների գումարը կոչվում է բազմանկյան *պարագիծ*:

$n$ գագաթ ունեցող բազմանկյանն անվանում են *n-անկյուն*: Այն ունի $n$ կողմ: Բազմանկյան օրինակ է եռանկյունը: Նկար 2-ում պատկերված են $ABCD$ քառանկյունը և $A_1A_2A_3A_4A_5A_6$ վեցանկյունը: Նկար 3-ում պատկերված պատկերը բազմանկյուն չէ, քանի որ $C_1C_5$ և $C_2C_3$ (ինչպես նաև $C_3C_4$ և $C_1C_5$) ոչ կից հատվածներն ունեն ընդհանուր կետ:

Բազմանկյան մի կողմին պատկանող երկու գագաթները կոչվում են *հարևան* գագաթներ: Երկու՝ ոչ հարևան գագաթները միացնող հատվածը կոչվում է բազմանկյան *անկյունագիծ*:




Նկ. 1







Նկ. 2




Նկ. 3



Նկ. 4

Յուրաքանչյուր բազմանկյուն հարթությունը տրոհում է երկու մասի, որոնցից մեկը կոչվում է բազմանկյան *ներքին տիրույթ*, իսկ մյուսը՝ *արտաքին տիրույթ*: Նկար 4-ում բազմանկյունների ներքին տիրույթները ստվերագծված են: Բազմանկյան և նրա ներքին տիրույթի միավորում հանդիսացող պատկերը ևս անվանվում է բազմանկյուն:

**(2) Ուռուցիկ բազմանկյուն:** Բազմանկյունը կոչվում է ուռուցիկ, եթե այն ընկած է իր ցանկացած երկու հարևան գագաթներով անցնող ուղիղներից յուրաքանչյուրի մի կողմում: Նկար 5-ում պատկերված $F_1$ բազմանկյունը ուռուցիկ է, իսկ $F_2$ բազմանկյունը ուռուցիկ չէ:

Դիտենք 6,ա նկարում պատկերված ուռուցիկ $n$-անկյունը: Անկյուններ $A_nA_1A_2$-ը, $A_1A_2A_3$-ը, ..., $A_{n-1}A_nA_1$-ը կոչվում են այդ բազմանկյան *անկյուններ*: Գտնենք դրանց գումարը: Դրա համար $A_1$




Նկ. 5




Նկ. 6




ա)




բ)

Նկ. 7

գագաթը անկյունագծերով միացնենք մյուս գագաթներին: Արդյունքում ստացվում են $n$-2 հատ եռանկյուններ (նկ. 6,բ): Այդ եռանկյունների անկյունների գումարը հավասար է $n$-անկյուն բազմանկյան անկյունների գումարին: Գիտենք, որ յուրաքանչյուր եռանկյան անկյունների գումարը $180^0$ է, ուստի՝ $A_1A_2A_3...A_n$ բազմանկյան անկյունների գումարը, այն է՝ $n$-2 եռանկյունների անկյունների գումարը, հավասար է $(n-2)\cdot180^0$:

Այսպիսով՝ *ուռուցիկ n-անկյան անկյունների գումարը $(n-2)\cdot180^0$ է:*

**3 Քառանկյուն:** Յուրաքանչյուր քառանկյուն ունի չորս գագաթ, չորս անկյուն, չորս կողմ և երկու անկյունագիծ (նկ. 7): Քառանկյան երկու ոչ կից կողմերը կոչվում են *հանդիպակաց*: Հանդիպակաց են կոչվում քառանկյան նաև երկու ոչ հարևան գագաթները (նմանապես նաև անկյունները):

Քառանկյունները լինում են ուռուցիկ և ոչ ուռուցիկ: 7,ա նկարում պատկերվածը ուռուցիկ քառանկյուն է, իսկ 7,բ նկարում պատկերվածը՝ ոչ ուռուցիկ:

Ուռուցիկ քառանկյան յուրաքանչյուր անկյունագիծ քառանկյունը տրոհում է երկու եռանկյան: Ոչ ուռուցիկ քառանկյան անկյունագծերից մեկը ևս տրոհում է քառանկյունը երկու եռանկյան (տե՛ս $A_1A_3$ անկյունագիծը նկ. 7,բ):

Քանի որ ուռուցիկ $n$-անկյան անկյունների գումարը որոշվում է $(n-2)\cdot180^0$ արտահայտությամբ, ուրեմն՝ *ուռուցիկ քառանկյան անկյունների գումարը $360^0$ է:*

## Հարցեր և խնդիրներ



1. Գծագրեք ուռուցիկ հնգանկյուն և վեցանկյուն: Բազմանկյուններից յուրաքանչյուրում որևէ գագաթից տարեք բոլոր անկյունագծերը: Տարված անկյունագծերով քանի՞ եռանկյան է տրոհվում բազմանկյուններից յուրաքանչյուրը:
2. Գտեք անկյունների գումարը. **ա)** ուռուցիկ հնգանկյան, **բ)** ուռուցիկ վեցանկյան, **գ)** ուռուցիկ տասնանկյան:
3. Գտեք ուռուցիկ քառանկյան անկյունները, եթե դրանք իրար հավասար են:
4. Տրված է հավասար անկյուններով հնգանկյուն: Գտեք այդ անկյունները:

**5.** Քանի՞ կողմ ունի ուռուցիկ բազմանկյունը, եթե նրա անկյունների գումարը $540^0$ է:

**6.** Գտեք ուռուցիկ քառանկյան անկյունները, եթե նրա երեք անկյունները իրար հավասար են, իսկ չորրորդ անկյունը դրանցից յուրաքանչյուրից փոքր է $40^0$-ով:

**7.** Գտեք ուռուցիկ քառանկյան անկյունները, եթե դրանցից մեկը մյուսներից մեծ է համապատասխանաբար $10^0$-ով, $20^0$-ով և $30^0$-ով:

**8.** Գրեք ուռուցիկ քառանկյան անկյունները, եթե դրանք համեմատական են 1, 2, 4, 5 թվերին:

**9.** Գտեք ուռուցիկ հնգանկյան անկյունները, եթե դրանք համեմատական են 2, 3, 4, 6, 12 թվերին:

**10.** Քանի՞ կողմ ունի ուռուցիկ բազմանկյունը, որի յուրաքանչյուր անկյունը հավասար է. **ա)** $90^0$, **բ)** $60^0$, **գ)** $120^0$, **դ)** $108^0$:

**11.** Գտեք քառանկյան կողմերը, եթե նրա պարագիծը 8սմ է, իսկ կողմերից մեկը մյուս կողմերից մեծ է համապատասխանաբար 3մմ-ով, 4մմ-ով և 5մմ-ով:

**12.** Գտեք քառանկյան կողմերը, եթե նրա պարագիծը 66սմ է, առաջին կողմը երկրորդից մեծ է 8սմ-ով և նույնքանով փոքր է երրորդից, իսկ չորրորդը՝ երեք անգամ մեծ է երկրորդից:

**13.** Գտեք $ABCD$ ուռուցիկ քառանկյան $A$, $B$ և $C$ անկյունները, եթե $\angle A=\angle B=\angle C$ և $\angle D=135^0$:

**14.** $ABCDE$ ուռուցիկ հնգանկյան $B$ գագաթով տարված անկյունագծերը հավասար են: Հայտնի է, որ $\angle ABE=\angle CBD$ և $\angle BEA=\angle BDC$: Ապացուցեք, որ $ABDE$ և $BEDC$ քառանկյունների պարագծերը հավասար են:

## § 2 ԶՈՒԳԱՀԵՌԱԳԻԾ

### 4 Զուգահեռագիծ:

Սահմանում: *Զուգահեռագիծ կոչվում է այն քառանկյունը, որի հանդիպակաց կողմերը զույգ առ զույգ զուգահեռ են:*

Նկար 8-ում պատկերված է $ABCD$ զուգահեռագիծը. $AB\|CD$, $AD\|BC$: Զուգահեռագիծը ուռուցիկ քառանկյուն է (տե՛ս խնդիր 28-ը):

Ուսումնասիրենք զուգահեռագծի մի քանի հատկություն:

*$1^0$. Զուգահեռագծի հանդիպակաց կողմերը հավասար են, և հանդիպակաց անկյունները հավասար են:*




Նկ. 8




Նկ. 9




Նկ. 10







*Զուգահեռագծի հատկությունները*

Նկ. 11

Դիտարկենք $ABCD$ զուգահեռագիծը (նկ. 9): $AC$ անկյունագծով այն տրոհվում է երկու՝ $ABC$ և $ADC$ եռանկյունների: Այդ եռանկյունների մեջ $AC$ կողմը ընդհանուր է, $\angle 1=\angle 2$ և $\angle 3=\angle 4$, որպես խաչադիր անկյուններ, որոնք առաջանում են, համապատասխանաբար, $AB$ և $CD$, $BC$ և $AD$ զուգահեռ ուղիղները $AC$ հատողով հատելիս: Ուրեմն՝ $ABC$ և $ADC$ եռանկյունները հավասար են: Ուստի՝ $AB=CD$, $AD=BC$ և $\angle B=\angle D$: Այնուհետև, օգտվելով անկյուններ 1-ի և 2-ի, 3-ի և 4-ի հավասարությունից, ստանում ենք. $\angle A=\angle 1+\angle 3=\angle 2+\angle 4=\angle C$:

2⁰. *Զուգահեռագծի անկյունագծերը հատման կետով կիսվում են:*

Դիցուք՝ $ABCD$ զուգահեռագծի $AC$ և $BD$ անկյունագծերի հատման կետը $O$-ն է (նկ. 10): $AOB$ և $COD$ եռանկյունները հավասար են՝ ըստ կողմի և նրան առընթեր անկյունների ($AB=CD$՝ որպես զուգահեռագծի հանդիպակաց կողմեր, $\angle 1=\angle 2$ և $\angle 3=\angle 4$, որպես խաչադիր անկյուններ, որոնք առաջանում են $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղները համապատասխանաբար $AC$ և $BD$ հատողներով հատելիս): Ուրեմն՝ $AO=OC$ և $OB=OD$, ինչը և պահանջվում էր ապացուցել:

Զուգահեռագծի բոլոր քննարկված հատկությունները լուսաբանված են նկար 11-ում:

**(5) Զուգահեռագծի հայտանիշները:** Դիտարկենք զուգահեռագծի երեք հայտանիշները:

1⁰. *Եթե քառանկյան երկու կողմերը հավասար են և զուգահեռ, ապա այդ քառանկյունը զուգահեռագիծ է:*

Դիցուք՝ $ABCD$ քառանկյան $AB$ և $CD$ կողմերը զուգահեռ են և $AB=CD$ (տե՛ս նկ. 9): Տանենք $AC$ անկյունագիծը, որը զուգահեռագիծը տրոհում է երկու՝ $ABC$ և $CDA$ եռանկյունների: Այդ եռանկյունները հավասար են՝ ըստ երկու կողմի և նրանցով կազմված անկյան ($AC$-ն ընդհանուր կողմ է, $AB=CD$՝ ըստ պայմանի, $\angle 1=\angle 2$՝ որպես $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղները $AC$ հատողով հատելիս առաջացած խաչադիր անկյուններ, որոնք առաջանում են $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղները $AC$ հատողով հատելիս): Հետևաբար՝ $\angle 3=\angle 4$: Բայց անկյուններ 3-ը և 4-ը խաչադիր են, որոնք առաջանում են $AD$ և $BC$ ուղիղները $AC$ հատողով հատելիս: Դրանից հետևում է, որ $AD \parallel BC$: Այսպիսով՝ $ABCD$ քառանկյան հանդիպակաց կողմերը զույգ առ զույգ զուգահեռ են: Ըստ սահմանման՝ այդ քառանկյունը՝ $ABCD$-ն, զուգահեռագիծ է:

$2^0$. *Եթե քառանկյան հանդիպակաց կողմերը զույգ առ զույգ հավասար են, ապա այդ քառանկյունը զուգահեռագիծ է:*

Տվյալ $ABCD$ քառանկյան մեջ տանենք $AC$ անկյունագիծը: Քառանկյունը տրոհվում է երկու՝ $ABC$ և $CDA$ եռանկյունների (տե՛ս նկ. 9): Այդ եռանկյունները, ըստ երեք կողմի, հավասար են ($AC$-ն ընդհանուր կողմ է, իսկ ըստ պայմանի՝ $AB=CD$ և $BC=DA$): Ուրեմն՝ $\angle 1=\angle 2$: Այստեղից հետևում է, որ $AB \parallel CD$: Ստացվեց, որ $AB=CD$ և $AB \parallel CD$, ուստի, ըստ զուգահեռագծի 1-ին հայտանիշի, $ABCD$ քառանկյունը զուգահեռագիծ է:

$3^0$. *Եթե քառանկյան անկյունագծերը հատվում և հատման կետով կիսվում են, ապա այդ քառանկյունը զուգահեռագիծ է:*

Դիտարկենք $ABCD$ քառանկյունը, որում $AC$ և $BD$ անկյունագծերը $O$ կետում հատվում և այդ կետով կիսվում են (տե՛ս նկ. 10): $AOB$ և $COD$ եռանկյունները հավասար են՝ ըստ եռանկյունների հավասարության առաջին հայտանիշի ($AO=OC$, $BO=OD$՝ ըստ պայմանի, $\angle AOB=\angle COD$՝ որպես հակադիր անկյուններ): Ուստի՝ $AB=CD$ և $\angle 1=\angle 2$:

Անկյուններ 1-ի և 2-ի հավասարությունից հետևում է, որ $AB \parallel CD$: Այսպիսով՝ $ABCD$ քառանկյան $AB$ և $CD$ հանդիպակաց կողմերը հավասար են և զուգահեռ: Ուրեմն, ըստ 1-ին հայտանիշի, $ABCD$ քառանկյունը զուգահեռագիծ է:

**15.** Ապացուցեք, որ $ABCD$ ուռուցիկ քառանկյունը զուգահեռագիծ է, եթե **ա)** $\angle BAC=\angle ACD$ և $\angle BCA=\angle DAC$, **բ)** $AB \parallel CD$, $\angle A=\angle C$:

**16.** Զուգահեռագծի պարագիծը 48սմ է: Գտեք զուգահեռագծի կողմերը, եթե. **ա)** կողմերից մեկը մյուսից մեծ է 3սմ-ով, **բ)** երկու կողմի տարբերությունը 7սմ է, **գ)** կողմերից մեկը երկու անգամ մեծ է մյուսից:

**17.** $ABCD$ զուգահեռագծի պարագիծը 50սմ է, $\angle C=30^0$, իսկ $CD$ ուղղին տարված $BH$ ուղղահայացը 6,5սմ է: Գտեք զուգահեռագծի կողմերը:

**18.** Զուգահեռագծի անկյուններից մեկը $40^0$ է: Գտեք մնացած անկյունները:

**19.** $ABCD$ քառանկյան մեջ $AB \parallel CD$, $BC \parallel AD$, $O$-ն անկյունագծերի հատման կետն է: $AOD$ եռանկյան պարագիծը 25սմ է, $AC$=16սմ, $BD$=14սմ: Գտեք $BC$ կողմը:

**20.** $ABCD$ քառանկյան մեջ $AB=CD$ և $AB \parallel CD$, $\angle CBD=15^0$: Գտեք $\angle BDA$-ն:

**21.** $ABCD$ ուռուցիկ քառանկյան մեջ $AB=CD$, $\angle B=70^0$, $\angle BCA=60^0$, $\angle ACD=50^0$: Ապացուցեք, որ $BC=AD$:

**22.** Զուգահեռագծի անկյունագիծը երկու կից կողմերի հետ կազմում է, համապատասխանաբար, $25^0$-ի և $35^0$-ի անկյուններ: Գտեք զուգահեռագծի անկյունները:

**23.** Գտեք զուգահեռագծի անկյունները, եթե դրանցից երկուսի գումարը $100^0$ է:

**24.** $ABCD$ զուգահեռագծի $A$ անկյան կիսորդը $K$ կետում հատում է $BC$ կողմը: Գտեք այդ զուգահեռագծի պարագիծը, եթե $BK$=15սմ, $KC$=9սմ:

**25.** Զուգահեռագծի կողմը անկյուններից մեկի կիսորդի հետ հատման կետով տրոհվում է 7սմ և 14սմ երկարությամբ հատվածների: Գտեք այդ զուգահեռագծի պարագիծը:

**26.** Գտեք $ABCD$ զուգահեռագծի անկյունները, եթե. **ա)** $\angle A=84^0$, **բ)** $\angle A-\angle B=55^0$, **գ)** $\angle A+\angle C=142^0$, **դ)** $\angle A=2\angle B$, **ե)** $\angle CAD=16^0$, $\angle ACD=37^0$:

**27.** $MNPQ$ զուգահեռագծի մեջ տարված է $MQ$ ուղղին ուղղահայաց $NH$-ը, ընդ որում՝ $H$ կետը գտնվում է $MQ$ կողմի վրա: Գտեք զուգահեռագծի կողմերը և անկյունները, եթե հայտնի է, որ $MH$=3սմ, $HQ$=5սմ, $\angle MNH=30^0$:

**28.** Ապացուցեք, որ զուգահեռագիծն ուռուցիկ քառանկյուն է:

Լուծում: Դիտարկենք $ABCD$ զուգահեռագիծը (տե՛ս նկ. 8) և ապացուցենք, որ այն ընկած է իր ցանկացած երկու հարևան գագաթներով անցնող ուղիղներից յուրաքանչյուրի մի կողմում: Դիտենք, օրինակ, $AB$ ուղիղը: Քանի որ $AB \parallel CD$, ապա $CD$ հատվածը և $AB$ ուղիղը ընդհանուր կետ չունեն: Նշանակում է՝ $CD$ հատվածը գտնվում է $AB$ ուղղի մի կողմում: Բայց այդ դեպքում $BC$ և $AD$ հատվածները ևս կգտնվեն $AB$ ուղղի նույն կողմում: Այսպիսով $ABCD$ զուգահեռագիծը գտնվում է $AB$ ուղղի մի կողմում:

**29.** $ABCD$ զուգահեռագծի մեջ $AB \neq BC$ և $\angle A$-ն սուր է: Այդ զուգահեռագծի $B$ և $D$ գագաթներից տարված են $AC$ ուղղին ուղղահայացներ՝ $BK$-ն և $DM$-ը: Ապացուցեք, որ $BMDK$ քառանկյունը զուգահեռագիծ է:

**30.** $ABCD$ քառանկյան $AB$, $BC$, $CD$ և $DA$ կողմերի վրա նշված են համապատասխանաբար $M$, $N$, $P$ և $Q$ կետերն այնպես, որ $AM=CP$, $BN=DQ$, $BM=DP$, $NC=QA$: Ապացուցեք, որ $ABCD$-ն և $MNPQ$-ն զուգահեռագծեր են:

**31.** $ABCD$ զուգահեռագծի անկյունագծերը հատվում են $O$ կետում: Ապացուցեք, որ $A_1B_1C_1D_1$ քառանկյունը, որի գագաթները $OA$, $OB$, $OC$ և $OD$ հատվածների միջնակետերն են, զուգահեռագիծ է:

**32.** $ABCD$ զուգահեռագծի $BD$ անկյունագծի վրա $P$ և $Q$ կետերը նշված են այնպես, որ $PB=QD$: Ապացուցեք, որ $APCQ$ քառանկյունը զուգահեռագիծ է:

## § 3 ԹԱԼԵՍԻ ԹԵՈՐԵՄԸ: ՍԵՂԱՆ

### 6 Եռանկյան միջին գիծը:

Սահմանում: *Եռանկյան երկու կողմերի միջնակետերը միացնող հատվածը կոչվում է եռանկյան միջին գիծ:*

Եռանկյան միջին գծի հատկությունն ուսումնասիրելու համար նախ լուծենք մի կարևոր խնդիր:

Խնդիր: *Կամայական $ABC$ եռանկյան $AB$ կողմի $M$ միջնակետով տարված է $BC$ կողմին զուգահեռ ուղիղ: Այդ ուղիղը $N$ կետում հատում է $AC$ կողմը: Ապացուցել, որ $AN=NC$:*

Լուծում: Տրված $ABC$ եռանկյան $C$ գագաթով տանենք $AB$ ուղղին զուգահեռ ուղիղ և $MN$ ուղղի հետ նրա հատման կետը նշանակենք $D$ (նկ. 12): Ստացված $MBCD$ քառանկյան հանդիպակաց

կողմերը զույգ առ զույգ զուգահեռ են, այսինքն՝ $MBCD$-ն զուգահեռագիծ է: Քանի որ, ըստ պայմանի, $AM=MB$, իսկ $MB=CD$ (որպես զուգահեռագծի հանդիպակաց կողմեր), ապա $AM=CD$: Ստացվում է, որ $AMN$ և $NCD$ եռանկյունները հավասար են՝ ըստ կողմի և նրան առընթեր անկյունների ($\angle 1=\angle 2$ և $\angle 3=\angle 4$, որպես խաչադիր անկյուններ, որոնք առաջանում են $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղները համապատասխանաբար $AC$ և $MD$ հատողներով հատելիս): Այստեղից հետևում է, որ $AN=NC$, ինչը և պահանջվում էր ապացուցել:



Նկ. 12

Այժմ քննության առնենք ստացված $MN$ հատվածը: Նախ պարզ է, որ $MN$-ը համընկնում է $ABC$ եռանկյան միջին գծի հետ ($M$-ը և $N$-ը համապատասխանաբար $AB$ և $AC$ կողմերի միջնակետերն են): Քանի որ $MN$-ը գտնվում է $BC$-ին զուգահեռ $MD$ ուղղի վրա, ապա $MN \parallel BC$: Միաժամանակ՝ ունենք, որ $\Delta AMN=\Delta NCD$, ուստի $MN=ND$: Այսինքն՝ $MN=\frac{1}{2}MD$: Բայց, որովհետև $MD=BC$ (որպես զուգահեռագծի հանդիպակաց կողմեր), ուրեմն՝ $MN=\frac{1}{2}BC$:

Ստացվեց, որ $ABC$ եռանկյան $MN$ միջին գիծը զուգահեռ է $BC$ կողմին և հավասար է նրա կեսին: Նույնը կարելի է ասել ցանկացած եռանկյան յուրաքանչյուր միջին գծի մասին:

Այսպիսով՝ *եռանկյան միջին գիծը զուգահեռ է նրա կողմերից մեկին և հավասար է այդ կողմի կեսին:*

**7 Թալեսի թեորեմը:** Այժմ ապացուցենք մի թեորեմ, որը վերաբերում է հատվածը հավասար մասերի բաժանման խնդրին, և կոչվում է հին հույն գիտնական *Թալեսի* անունով (Թալես Միլեթացի, մ.թ.ա. մոտ 625-547թթ.):

Թեորեմ: *Եթե երկու ուղիղներից մեկի վրա հաջորդաբար տեղադրվեն մի քանի հավասար հատվածներ և նրանց ծայրակետերով տարվեն երկրորդ ուղիղը հատող զուգահեռ ուղիղներ,*




Նկ. 13

*ապա դրանք երկրորդ ուղղի վրա անջատում են միմյանց հավասար հատվածներ*:

Ապացուցում: Դիցուք՝ $\ell_1$ ուղղի վրա տեղադրված են $A_1A_2$, $A_2A_3$, $A_3A_4$, … հավասար հատվածները և նրանց ծայրակետերով, այն է՝ $A_1$, $A_2$, $A_3$, … կետերով տարված են զուգահեռ ուղիղներ, որոնք $\ell_2$ ուղիղը հատում են $B_1$, $B_2$, $B_3$, … կետերում (նկ. 13): Պահանջվում է ապացուցել, որ $B_1B_2$, $B_2B_3$, $B_3B_4$, … հատվածները միմյանց հավասար են: Ապացուցենք, օրինակ, $B_1B_2=B_2B_3$:

Նախ դիտարկենք այն դեպքը, երբ $\ell_1$ և $\ell_2$ ուղիղները զուգահեռ են (նկ. 13,ա): Այս դեպքում ստացված $A_1B_1B_2A_2$ և $A_2B_2B_3A_3$ պատկերները զուգահեռագծեր են, քանի որ նրանց հանդիպակաց կողմերը զույգ առ զույգ զուգահեռ են: Հետևաբար՝ $A_1A_2=B_1B_2$ և $A_2A_3=B_2B_3$: Բայց, քանի որ $A_1A_2=A_2A_3$, ուրեմն՝ $B_1B_2=B_2B_3$:

Այժմ դիտարկենք այն դեպքը, երբ $\ell_1$ և $\ell_2$ ուղիղները զուգահեռ չեն: $B_1$ կետով տանենք $\ell_1$ ուղղին զուգահեռ $\ell$ ուղիղը (նկ. 13,բ): Այն հատում է $A_2B_2$ և $A_3B_3$ ուղիղները ինչ որ $C$ և $D$ կետերում: Քանի որ $A_1A_2=A_2A_3$, ապա, ըստ նախորդ դեպքի ապացույցի, $B_1C=CD$: Այժմ դիտենք $B_1DB_3$ եռանկյունը, որի մեջ $B_1C=CD$ և $CB_2 \parallel DB_3$: Դրանից հետևում է, որ $B_1B_2=B_2B_3$ (տե՛ս 6-րդ կետը): Նույն ձևով ապացուցվում են, որ $B_2B_3=B_3B_4$, և այլն:

Թեորեմն ապացուցված է:

Այժմ դիտարկենք մի քառանկյուն, որի ուսումնասիրության մեջ կարևոր դեր ունեն այս և նախորդ կետերում նշված փաստերը:




Նկ. 14



ա) Հավասարասրուն սեղան



բ) Ուղղանկյուն սեղան

Նկ. 15

**8 Սեղան:** *Սեղան կոչվում է այն քառանկյունը, որի երկու կողմերը զուգահեռ են, իսկ մյուս երկու կողմերը զուգահեռ չեն:*

Զուգահեռ կողմերը կոչվում են սեղանի *հիմքեր*, իսկ երկու մյուս կողմերը՝ նրա *սրունքներ* (նկ. 14):

Սեղանը կոչվում է *հավասարասրուն*, եթե նրա սրունքները հավասար են (նկ. 15,ա): Սեղանը, որի որևէ անկյունը ուղիղ է, կոչվում է *ուղղանկյուն սեղան* (նկ. 15,բ):

Սեղանի սրունքների միջնակետերը միացնող հատվածը կոչվում է սեղանի *միջին գիծ*:

Թ ե ո ր ե մ : *Սեղանի միջին գիծը զուգահեռ է հիմքերին և հավասար է նրանց կիսագումարին:*

Ա պ ա ց ու յ ց ու մ : Դիցուք՝ $ABCD$-ն տրված սեղան է, որի հիմքերն են $BC$-ն և $AD$-ն (նկ.16), իսկ $EF$-ը նրա միջին գիծն է, այսինքն՝ $AE=EB$ և $DF=FC$: Պահանջվում է ապացուցել, որ $EF \parallel AD \parallel BC$ և $EF=\frac{1}{2}(BC+AD)$:




Նկ. 16

$B$ գագաթով և $CD$ սրունքի $F$ միջնակետով տանենք ուղիղ: Այն հատում է $AD$ ուղիղը ինչ-որ $Q$ կետում: $FBC$ և $FQD$ եռանկյունները հավասար են՝ ըստ կողմի և նրան առընթեր երկու անկյան (ըստ պայմանի $FC=FD$, $\angle BFC=\angle QFD$՝ որպես հակադիր անկյուններ, $\angle FCB=\angle FDQ$՝ որպես խաչադիր անկյուններ, որոնք առաջանում են $BC$ և $AD$ զուգահեռ ուղիղները $CD$ հատողով հատելիս): Ուրեմն՝ $DQ=CB$:

Այժմ դիտենք $ABQ$ եռանկյունը: $EF$-ը նրա միջին գիծն է, ուստի՝ $EF \parallel AQ$ և $EF=\frac{1}{2}AQ$: Բայց $AQ$ և $AD$ ուղիղները համընկնում են, իսկ $AQ=AD+DQ=AD+BC$: Այստեղից հետևում է, որ $EF \parallel AD \parallel BC$ և $EF=\frac{1}{2}(BC+AD)$: Թեորեմն ապացուցված է:



## Խնդիրներ

**33.** Եռանկյան կողմերը հավասար են 6սմ, 8սմ, 10սմ: Գտեք այն եռանկյան պարագիծը, որի կողմերը տրված եռանկյան միջին գծերն են:

**34.** Ապացուցեք, որ եռանկյան գագաթները հավասարահեռ են նրա որևէ միջին գիծն ընդգրկող ուղղից:

**35.** Ապացուցեք, որ ուռուցիկ քառանկյան կողմերի միջնակետերը զուգահեռագծի գագաթներ են:

**36.** Ուռուցիկ քառանկյան անկյունագծերը հավասար են 12մ և 16մ: Գտեք այն քառանկյան կողմերը, որի գագաթները տրված քառանկյան կողմերի միջնակետերն են:

**37.** Քառանկյան անկյունագծերը հավասար են $m$-ի և $n$-ի: Գտեք այն քառանկյան պարագիծը, որի գագաթները տրված քառանկյան կողմերի միջնակետերն են:

**38.** Գտեք $AD$ և $BC$ հիմքերով սեղանի $B$ և $D$ անկյունները, եթե $\angle A=36^0$, $\angle C=117^0$:

**39.** Ապացուցեք, որ հավասարասրուն սեղանի յուրաքանչյուր հիմքին առընթեր անկյունները հավասար են:

**40.** Հավասարասրուն սեղանի մեծ հիմքը 4մ է, սրունքը՝ 2մ, իսկ դրանց կազմած անկյունը՝ $60^0$: Գտեք սեղանի փոքր հիմքը:

**41.** Գտեք հավասարասրուն սեղանի անկյունները, եթե հայտնի է, որ սեղանի հանդիպակաց անկյունների տարբերությունը $40^0$ է:

**42.** Սեղանի հիմքերը հարաբերում են, ինչպես 2:3, իսկ միջին գիծը 10սմ է: Գտեք սեղանի հիմքերը:

**43.** $M$ և $N$ կետերը գտնվում են տրված ուղղի մի կողմում, և նրանց հեռավորությունները այդ ուղղից հավասար են 10սմ և 22սմ: Գտեք $MN$ հատվածի միջնակետի հեռավորությունը այդ ուղղից:

**44.** Հավասարասրուն սեղանի բութ անկյան գագաթից նրա մեծ հիմքին տարված ուղղահայացն այդ հիմքը տրոհում է 6սմ և 30սմ երկարությամբ հատվածների: Գտեք սեղանի փոքր հիմքը և միջին գիծը:

**45.** Սեղանի սրունքներից մեկը բաժանված է երեք հավասար հատվածների: Այդ բաժանման կետերից տարված են մյուս սրունքին միացնող հատվածներ, որոնք զուգահեռ են սեղանի հիմքերին:

Գտեք այդ հատվածների երկարությունները, եթե սեղանի հիմքերը հավասար են 2սմ և 5սմ:

**46.** Տրված ուղղի տարբեր կողմերում տրված են $M$ և $N$ կետերը, որոնց հեռավորությունները այդ ուղղից հավասար են 10սմ և 6սմ: Գտեք $MN$ հատվածի միջնակետի հեռավորությունը տրված ուղղից:

**47.** Ապացուցեք, որ սեղանը հավասարասրուն է, եթե. **ա)** հիմքին առընթեր անկյունները հավասար են, **բ)** եթե անկյունագծերը հավասար են:

**48.** Ապացուցեք, որ հավասարասրուն սեղանի տեսք ունեցող միատեսակ սալիկներով կարելի է լրիվությամբ ծածկել հարթության ցանկացած մասը:

**49.** Ուղղանկյուն սեղանի մեջ սուր անկյունը $45^0$ է: Փոքր սրունքը և փոքր հիմքը 10-ական սմ են: Գտեք սեղանի մեծ հիմքը:

**50.** Ուղղանկյուն սեղանի հիմքերն են $a$ և $b$, անկյուններից մեկը $\alpha$: Գտեք. **ա)** սեղանի մեծ սրունքը, եթե $a$=4սմ, $b$=7սմ, $\alpha=60^0$, **բ)** սեղանի փոքր սրունքը, եթե $a$=10սմ, $b$=15սմ, $\alpha=45^0$:

## § 4 ՈՒՂՂԱՆԿՅՈՒՆ, ՇԵՂԱՆԿՅՈՒՆ, ՔԱՌԱԿՈՒՍԻ

**9 Ուղղանկյուն:** *Ուղղանկյուն կոչվում է այն զուգահեռագիծը, որի բոլոր անկյուններն ուղիղ են:* Նկատենք, որ ուղղանկյունը կարող է դիտվել որպես զուգահեռագիծ, այսինքն այն օժտված է զուգահեռագծին բնորոշ բոլոր հատկություններով: Դրանք են՝ ուղղանկյան հանդիպակաց կողմերը հավասար են, անկյունագծերը հատման կետով կիսվում են:

Ուսումնասիրենք ուղղանկյանը առանձնահատուկ հատկությունը:

*Ուղղանկյան անկյունագծերը հավասար են:*



Նկ. 17

Իսկապես, դիտենք նկար 17-ը, որում պատկերված $ABCD$ ուղղանկյան անկյունագծերն են $AC$-ն և $BD$-ն: $ACD$ և $DBA$ ուղղանկյուն եռանկյունները հավասար են՝ ըստ երկու էջի ($CD=BA$, $AD$-ն ընդհանուր էջ է): Դրանից հետևում է, որ $AC$ և $BD$ ներքնաձիգները հավասար են. $AC=BD$, ինչը և պահանջվում էր ապացուցել:

Ապացուցենք հակադարձ պնդումը (*ուղղանկյան հայտանիշը*):

*Եթե զուգահեռագծի անկյունագծերը հավասար են, ապա այդ զուգահեռագիծը ուղղանկյուն է:*

զուգահեռագծի $AC$ և $BD$ անկյունագծերը հավա-

Դիցուք՝ $ABCD$ զուգահեռագծի $AC$ և $BD$ անկյունագծերը հավասար են (տես ս նկ. 17): $ABD$ և $DCA$ եռանկյունները հավասար են՝ ըստ երեք կողմի ($AB=DC$, $BD=CA$, $AD$-ն ընդհանուր կողմ է): Դրանից հետևում է, որ $\angle A=\angle D$: Քանի որ զուգահեռագծի հանդիպակաց անկյունները հավասար են, ապա $\angle A=\angle C$, $\angle D=\angle B$: Այսպիսով՝ $\angle A=\angle B=\angle C=\angle D$: Զուգահեռագիծը ուռուցիկ քառանկյուն է և, ուրեմն, $\angle A+\angle B+\angle C+\angle D=360^0$: Հետևաբար՝ $\angle A=\angle B=\angle C=\angle D=90^0$, այսինքն՝ $ABCD$-ն ուղղանկյուն է:

**(10) Շեղանկյուն և քառակուսի:** *Շեղանկյուն կոչվում է այն զուգահեռագիծը, որի բոլոր կողմերը հավասար են:* Նկատենք, որ շեղանկյունը կարող է դիտվել որպես զուգահեռագիծ, այսինքն այն օժտված է զուգահեռագծին բնորոշ բոլոր հատկություններով: Ուսումնասիրենք շեղանկյանը առանձնահատուկ հատկությունը:

*Շեղանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են և կիսում են շեղանկյան անկյունները:*

Դիտարկենք $ABCD$ շեղանկյունը (նկ. 18): Պահանջվում է ապացուցել, որ $AC\perp BD$, և անկյունագծերից յուրաքանչյուրը շեղանկյան հանդիպակաց անկյունները կիսում է: Ապացուցենք, օրինակ, որ $\angle BAC=\angle DAC$:

Ըստ շեղանկյան սահմանման՝ $AB=AD$, ուստի $BAD$ եռանկյունը հավասարասրուն է: Քանի որ շեղանկյունը զուգահեռագիծ է, ապա նրա անկյունագծերը հատման $O$ կետով կիսվում են: Հետևաբար՝ $AO$-ն $BAD$ հավասարասրուն եռանկյան միջնագիծ է և, ուրեմն, նաև կիսորդ է և բարձրություն: Այսինքն՝ $AC\perp BD$ և $\angle BAC=\angle DAC$, ինչը և պահանջվում էր ապացուցել:




Նկ. 18



ա)



բ)

*Քառակուսու հատկությունները*

Նկ. 19

*Քառակուսի կոչվում է այն ուղղանկյունը, որի բոլոր կողմերը հավասար են:* Քանի որ ուղղանկյունը զուգահեռագիծ է, ապա քառակուսին ևս զուգահեռագիծ է. այնպիսի զուգահեռագիծ, որի բոլոր կողմերը հավասար են, այսինքն՝ նաև շեղանկյուն է: Դրանցից հետևում է, որ քառակուսին օժտված է ինչպես ուղղանկյան, այնպես էլ շեղանկյան բոլոր հատկություններով: Ձևակերպենք քառակուսու հիմնական հատկությունները.

ա. *քառակուսու բոլոր անկյունները ուղիղ են* (նկ. 19,ա),

բ. *քառակուսու անկյունագծերը հավասար են, փոխուղղահայաց են, հատման կետով կիսվում են և քառակուսու անկյունները կիսում են* (նկ. 19,բ):

## (11) Առանցքային և կենտրոնային համաչափություններ:

Ա. Առանցքային համաչափություն: *Երկու՝ $A$ և $A_1$ կետերը կոչվում են $a$ ուղղի նկատմամբ համաչափ, եթե $a$ ուղիղն ուղղահայաց է $AA_1$ հատվածին և անցնում է նրա միջնակետով* (նկ. 20,ա): Համարվում է, որ $a$ ուղղի յուրաքանչյուր կետը համաչափ է ինքը իրեն: 20,բ նկարում $M$ և $M_1$, $N$ և $N_1$ կետերը համաչափ են $b$ ուղղի նկատմամբ, իսկ $P$ կետը այդ ուղղի նկատմամբ համաչափ է ինքը իրեն:

*Պատկերը կոչվում է $a$ ուղղի նկատմամբ համաչափ, եթե այդ պատկերի յուրաքանչյուր կետի՝ $a$ ուղղի նկատմամբ համաչափ կետը ևս պատկանում է այդ պատկերին:* $a$ ուղիղը կոչվում է պատկերի *համաչափության առանցք:* Նաև ասում են, որ պատկերն օժտված է *առանցքային համաչափությամբ:*

Բերենք պատկերների օրինակներ, որոնք օժտված են առանցքային համաչափությամբ (նկ. 21): Չփռված անկյունն ունի համաչափության մեկ առանցք. դա այն ուղիղն է, որն ընդգրկում է տվյալ անկյան







Նկ. 20

*Քառակուսի կոչվում է այն ուղղանկյունը, որի բոլոր կողմերը հավասար են:* Քանի որ ուղղանկյունը զուգահեռագիծ է, ապա քառակուսին ևս զուգահեռագիծ է. այնպիսի զուգահեռագիծ, որի բոլոր կողմերը հավասար են, այսինքն՝ նաև շեղանկյուն է: Դրանցից հետևում է, որ քառակուսին օժտված է ինչպես ուղղանկյան, այնպես էլ շեղանկյան բոլոր հատկություններով: Ձևակերպենք քառակուսու հիմնական հատկությունները.

ա. *քառակուսու բոլոր անկյունները ուղիղ են* (նկ. 19,ա),

բ. *քառակուսու անկյունագծերը հավասար են, փոխուղղահայաց են, հատման կետով կիսվում են և քառակուսու անկյունները կիսում են* (նկ. 19,բ):

## (11) Առանցքային և կենտրոնային համաչափություններ:

Ա. Առանցքային համաչափություն: *Երկու՝ $A$ և $A_1$ կետերը կոչվում են $a$ ուղղի նկատմամբ համաչափ, եթե $a$ ուղիղն ուղղահայաց է $AA_1$ հատվածին և անցնում է նրա միջնակետով* (նկ. 20,ա): Համարվում է, որ $a$ ուղղի յուրաքանչյուր կետը համաչափ է ինքը իրեն: 20,բ նկարում $M$ և $M_1$, $N$ և $N_1$ կետերը համաչափ են $b$ ուղղի նկատմամբ, իսկ $P$ կետը այդ ուղղի նկատմամբ համաչափ է ինքը իրեն:

*Պատկերը կոչվում է $a$ ուղղի նկատմամբ համաչափ, եթե այդ պատկերի յուրաքանչյուր կետի՝ $a$ ուղղի նկատմամբ համաչափ կետը ևս պատկանում է այդ պատկերին:* $a$ ուղիղը կոչվում է պատկերի *համաչափության առանցք:* Նաև ասում են, որ պատկերն օժտված է *առանցքային համաչափությամբ:*

Բերենք պատկերների օրինակներ, որոնք օժտված են առանցքային համաչափությամբ (նկ. 21): Չփռված անկյունն ունի համաչափության մեկ առանցք. դա այն ուղիղն է, որն ընդգրկում է տվյալ անկյան







Նկ. 20


Средняя
Մարզ
03510587
13



*Առանցքային համաչափությամբ օժտված պատկերներ*

Նկ. 21

կիսորդը: Հավասարասրուն (բայց ոչ հավասարակողմ) եռանկյունը ևս ունի համաչափության մեկ առանցք, իսկ հավասարակողմ եռանկյունը՝ համաչափության երեք առանցք: Ուղղանկյունը և շեղանկյունը, որոնք քառակուսի չեն, ունեն համաչափության երկուական առանցքներ, իսկ քառակուսին՝ համաչափության չորս առանցք: Շրջանագիծն ունի անվերջ թվով համաչափության առանցքներ. կենտրոնով անցնող յուրաքանչյուր ուղիղ շրջանագծի համաչափության առանցք է:

Կան այնպիսի պատկերներ, որոնք առհասարակ համաչափության առանցք չունեն: Այդպիսի պատկերներից է ուղղանկյուն և շեղանկյուն չհանդիսացող զուգահեռագիծը, ինչպես նաև տարակողմ եռանկյունը:

**Բ. Կենտրոնային համաչափություն:** Երկու՝ $A$ և $A_1$ կետեր կոչվում են *$O$ կետի նկատմամբ համաչափ*, եթե $O$-ն $AA_1$ հատվածի միջնակետն է (նկ. 22,ա): Համարվում է, որ $O$ կետը համաչափ է ինքը իրեն: 22,բ նկարում $M$ և $M_1$, $N$ և $N_1$ կետերը համաչափ են $O$ կետի նկատմամբ, իսկ $P$ և $Q$ կետերը այդ կետի նկատմամբ համաչափ չեն:




Նկ. 22





*Կենտրոնային համաչափությամբ օժտված պատկերներ*

Նկ. 23



Նկ. 24

*Պատկերը կոչվում է O կետի նկատմամբ համաչափ, եթե այդ պատկերի կետերից յուրաքանչյուրի՝ O կետի նկատմամբ համաչափ կետը ևս պատկանում է այդ նույն պատկերին:* O կետը կոչվում է պատկերի *համաչափության կենտրոն*: Նաև ասում են, որ պատկերն օժտված է *կենտրոնային համաչափությամբ:* Կենտրոնային համաչափությամբ օժտված պատկերների օրինակներ են շրջանագիծը և զուգահեռագիծը (նկ. 23): Շրջանագծի համաչափության կենտրոնը շրջանագծի կենտրոնն է, իսկ զուգահեռագծի համաչափության կենտրոնը՝ նրա անկյունագծերի հատման կետը: Ուղիղը ևս օժտված է կենտրոնային համաչափությամբ: Ի տարբերություն շրջանագծի և զուգահեռագծի, որոնցից յուրաքանչյուրն ունի համաչափության մեկ կենտրոն, ուղղի համար դրանք անվերջ շատ են. ուղղի ցանկացած կետ նրա համաչափության կենտրոն է: Համաչափության կենտրոն չունեցող պատկերի օրինակ է եռանկյունը:

Առանցքային կամ կենտրոնային համաչափությամբ են օժտված մեր շրջակա աշխարհի առարկաներից շատերի պատկերները հարթության վրա: Օրինակ, ծառերի տերևներից և ծաղիկների պսակաթերթերից շատերը համաչափ են միջին ցողունի նկատմամբ (նկ. 24):

Համաչափությունն ունի գեղագիտական և կիրառական նշանակություն: Այն մեզ հաճախ է հանդիպում արվեստում, ճարտարապետու-



Նկ. 25

թյան մեջ, տեխնիկայում, կենցաղում: Այսպես, շենքերից շատերի ճակատները նախագծվում են՝ ըստ առանցքային համաչափության (նկ. 25): Մեծ ի մասամբ առանցքի կամ կենտրոնի նկատմամբ համաչափ են արվում գորգերի, գործվածքների, պաստառների նախշերը: Համաչափ են շատ սարքավորումների բազմաթիվ մանրակներ, որոնք լայն կիրառություն ունեն տեխնիկայում և արտադրության մեջ:



## Հարցեր և խնդիրներ

**51.** Ապացուցեք, որ այն զուգահեռագիծը, որի անկյուններից մեկը ուղիղ է, ուղղանկյուն է:

**52.** Ապացուցեք, որ եթե քառանկյան բոլոր անկյունները ուղիղ են, ապա քառանկյունը ուղղանկյուն է:

**53.** Ապացուցեք, որ եթե զուգահեռագծի բոլոր անկյունները հավասար են, ապա այն ուղղանկյուն է:

**54.** $ABCD$ ուղղանկյան անկյունագծերը հատվում են $O$ կետում: $\angle COD=60^0$, $CD$=10սմ: Գտեք ուղղանկյան անկյունագծերը:

**55.** Գտեք $ABCD$ ուղղանկյան պարագիծը, եթե $A$ անկյան կիսորդը տրոհում է. **ա)** $BC$ կողմը 45,6սմ և 7,85սմ հատվածների, **բ)** $DC$ կողմը 2,7դմ և 4,5դմ հատվածների:

**56.** $ABCD$ ուղղանկյան անկյունագծերը հատվում են $O$ կետում: Ապացուցեք, որ $AOD$ և $AOB$ եռանկյունները հավասարասրուն են:

**57.** $ABCD$ ուղղանկյան անկյունագծերը հատվում են $O$ կետում: Գտեք $AOB$ եռանկյան պարագիծը, եթե $\angle CAD=30^0$, $AC$=12սմ:

**58.** Ապացուցեք, որ ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգին տարված միջնագիծը հավասար է ներքնաձիգի կեսին:

**59.** $ABCD$ ուղղանկյան անկյունագծերը հատվում են $O$ կետում, $E$-ն $AB$ կողմի միջնակետն է, $\angle BAC=50^0$: Գտեք $\angle AOE$-ն:

**60.** $MPKH$ ուղղանկյան անկյունագծերը հատվում են $O$ կետում: $OA$ հատվածը $MOP$ եռանկյան բարձրությունն է, $\angle AOP=15^0$: Գտեք $\angle OHK$-ն:

**61.** Ուղղանկյան անկյունագծերի հատման կետի հեռավորությունը մեծ կողմից 4սմ է, իսկ փոքր կողմից՝ 6սմ: Գտեք ուղղանկյան պարագիծը:

**62.** Ուղղանկյան անկյուններից մեկի կիսորդը ուղղանկյան կողմը բաժանում է երկու հավասար հատվածների: Գտեք ուղղանկյան պարագիծը, եթե նրա փոքր կողմը 10սմ է:

**63.** Շեղանկյան անկյունագծերից մեկը հավասար է կողմին: Գտեք. **ա)** շեղանկյան անկյունները, **բ)** այն անկյունները, որոնք կազմում են շեղանկյան անկյունագծերը նրա կողմերի հետ:

**64.** Գտեք $ABCD$ շեղանկյան պարագիծը, եթե $\angle B=60^0$, $AC=10,5$սմ:

**65.** Գտեք այն անկյունները, որոնք կազմում են շեղանկյան անկյունագծերը նրա կողմի հետ, եթե հայտնի է, որ շեղանկյան անկյուններից մեկը $45^0$ է:

**66.** Ապացուցեք, որ զուգահեռագիծը շեղանկյուն է, եթե. **ա)** նրա անկյունագծերը փոխուղղահայաց են, **բ)** զուգահեռագծի անկյունագծերը նրա անկյունների կիսորդ են:

**67.** $ABCD$ շեղանկյան մեջ $\angle B=120^0$: Անկյունագծերը հատվում են $O$ կետում: $BC$ կողմը 10սմ է: Գտեք $BD$ անկյունագիծը:

**68.** Շեղանկյան գագաթներից մեկով նրա հանդիպակաց անկյունը կազմող կողմերին տարված ուղղահայացները կազմում են $30^0$-ի անկյուն, ընդ որում՝ դրանցից յուրաքանչյուրի երկարությունը 5սմ է: Գտեք շեղանկյան կողմը:

**69.** Քառակուսու անկյունագծերի հատման կետից մինչև կողմերը եղած հեռավորությունների գումարը 20սմ է: Գտեք քառակուսու պարագիծը:

**70.** Քառակուսու պարագիծը 80սմ է: Որքա՞ն է քառակուսու անկյունագծի միջնակետի հեռավորությունը նրա կողմից:

**71.** Ապացուցեք, որ եթե շեղանկյան մի անկյունը ուղիղ է. ապա այդ շեղանկյունը քառակուսի է:

**72.** Քառակուսի՞ է, արդյոք, քառանկյունը, եթե նրա անկյունագծերը. **ա)** հավասար են և փոխուղղահայաց, **բ)** փոխուղղահայաց են և ունեն ընդհանուր միջնակետ, **գ)** հավասար են, փոխուղղահայաց են և ունեն ընդհանուր միջնակետ:

**73.** Ուղղանկյուն եռանկյան ուղիղ անկյան կիսորդի և ներքնաձիգի հատման կետով տարված են էջերին զուգահեռ ուղիղներ: Ապացուցեք, որ առաջացած քառանկյունը քառակուսի է:

**74.** Համաչափության քանի՞ առանցք ունի. **ա)** հատվածը, **բ)** ուղիղը, **գ)** ճառագայթը:

**75.** Հետևյալ տառերից որո՞նք ունեն համաչափության առանցք.

**ա)** Ա, Ō, Մ, Ո, Տ, Ց, Փ, Օ, **բ)** A, B, E, C, П, O, M, H, K:

**76.** Ապացուցեք, որ ուղղանկյան հանդիպակաց կողմերի միջնակետերով անցնող ուղիղը նրա համաչափության առանցքն է:

**77.** Ապացուցեք, որ հավասարասրուն եռանկյան հիմքին տարված կիսորդն ընդգրկող ուղիղը նրա համաչափության առանցքն է:

**78.** Ունի՞, արդյոք, համաչափության կենտրոն. **ա)** հատվածը, **բ)** ճառագայթը, **գ)** հատվող ուղիղների զույգը, **դ)** քառակուսին:

**79.** Հետևյալ տառերից որո՞նք ունեն համաչափության կենտրոն.

**ա)** Ս, Ը, Տ, Ց, Փ, Օ, Ֆ, **բ)** A, B, M, H, K, X, Φ:

## ԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՈՒՄԸ

Նկարագրենք մի ծրագիր, որով սովորաբար լուծում են կառուցման խնդիրները՝ կարկինի և քանոնի օգնությամբ: Այն կազմված է չորս մասից:

1) խնդրի լուծման եղանակի հայտնաբերում՝ որոնելի տարրերի և խնդրի տվյալների միջև կապերի բացահայտման միջոցով: Այս մասը կոչվում է *խնդրի վերլուծություն*: Վերլուծությունը հնարավորություն է տալիս կազմելու խնդրի լուծման պլան:

2) *կառուցման* կատարումը՝ ըստ նշված պլանի:

3) *Ապացուցում*՝ այն բանի, որ կառուցված պատկերը բավարարում է խնդրի պայմաններին:

4) Խնդրի *հետազոտում*, այն է՝ պարզել, թե արդյո՞ք ցանկացած տվյալների դեպքում խնդիրը լուծում ունի, եթե այո, ապա՝ քանի՞ լուծում:

Այն դեպքերում, երբ խնդիրը բավականաչափ պարզ է, առանձին մասերը, օրինակ վերլուծությունը կամ հետազոտումը, բաց է թողնվում: Հիշեք, որ մենք այդպես էինք վարվում 6-րդ դասարանում:

Այժմ այս ծրագիրը ցուցադրենք օրինակով:

Խնդիր: *Կառուցել զուգահեռագիծ՝ երկու կից կողմերով և անկյունագծերից մեկով:*

Լուծում: Նախ ճշտենք, թե ինչպես պետք է հասկանալ այս խնդիրը: Տրված են երեք հատված՝ $M_1N_1$, $M_2N_2$, $M_3N_3$ (նկ. 26,ա): Պահանջվում է կառուցել այնպիսի $ABCD$ զուգահեռագիծ, որի կից կողմերը, ասենք՝ $AB$-ն, և $BC$-ն, հավասար լինեն համապատասխանաբար $M_1N_1$ և $M_2N_2$ հատվածներին, իսկ անկյունագծերից մեկը, օրինակ՝ $BD$-ն հավասար լինի $M_3N_3$ հատվածին:

Խնդիրը լուծենք ըստ նկարագրված ծրագրի:

Վերլուծություն: Ենթադրենք, թե $ABCD$ որոնելի զուգահեռագիծը կառուցված է (նկ. 26,բ): Մենք տեսնում ենք, որ $BAD$ եռանկյան կողմերը հավասար են տրված $M_1N_1$, $M_2N_2$ և $M_3N_3$ հատված-







Նկ. 26

ների։ Այս հանգամանքը մեզ հուշում է խնդրի լուծման հետևյալ ուղին. անհրաժեշտ է նախ՝ կառուցել $ABD$ եռանկյունը՝ իր երեք կողմերով, իսկ այնուհետև՝ լրացնել նրա կառուցումը մինչև $ABCD$ զուգահեռագիծը։

Կառուցում։ Կառուցենք $ABD$ եռանկյունն այնպես, որ նրա $AB$, $AD$ և $BD$ կողմերը հավասարվեն համապատասխանաբար $M_1N_1$, $M_2N_2$ և $M_3N_3$ հատվածներին (իսկ թե դա ինչպես անել, մենք արդեն գիտենք 6-րդ դասարանից)։ Այնուհետև $B$ կետով տանենք ուղիղ՝ զուգահեռ $AD$-ին, և $D$ կետով երկրորդ ուղիղը՝ զուգահեռ $AB$-ին (զուգահեռ ուղիղներ տանելը ևս գիտենք՝ 6-րդ դասարանից)։

Կառուցված այդ ուղիղների հատման կետը նշանակենք $C$ տառով (նկ. 26,գ)։ $ABCD$ քառանկյունը որոնելի զուգահեռագիծն է։

Ապացուցում։ Ըստ կառուցման՝ $AB \parallel CD$ և $BC \parallel AD$, ուստի՝ $ABCD$-ն զուգահեռագիծ է։ Զուգահեռագծի կից կողմերը և անկյունագիծը համապատասխանաբար հավասար են տրված $M_1N_1$, $M_2N_2$ և $M_3N_3$ հատվածներին՝ նույնպես ըստ կառուցման։ Այսպիսով՝ $ABCD$ զուգահեռագիծը որոնելին է։

Հետազոտում։ Պարզ է, որ եթե տրված երեք՝ $M_1N_1$, $M_2N_2$ և $M_3N_3$ հատվածներով կարելի է կառուցել $ABD$ եռանկյուն, որի կողմերը հավասար լինեն այդ հատվածներին, ապա կարելի կլինի կառուցել նաև զուգահեռագիծ։ Սակայն $ABD$ եռանկյուն կառուցել միշտ չէ, որ կարելի է։ Եթե տրված հատվածներից որևէ մեկը մեծ կամ հավասար լինի մյուս երկուսի գումարին, ապա $ABD$ եռանկյուն, հետևաբար նաև՝ $ABCD$ զուգահեռագիծ կառուցելը հնարավոր չէ։

Փորձեք ինքնուրույն ապացուցել, որ եթե խնդիրն ունի լուծում, ապա այդ լուծումը միակն է։



80. Կառուցեք զուգահեռագիծ. **ա)**երկու կից կողմերով և նրանցով կազմված անկյունով, **բ)**երկու անկյունագծերով և դրանցով կազմված անկյունով:

81. Կառուցեք զուգահեռագիծ. **ա)**նրա մեծ կողմով, փոքր անկյունագծով և դրանցով կազմված անկյունով, **բ)**երկու անկյունագծով և մեծ կողմով:

82. Կառուցեք ուղղանկյուն սեղան. **ա)**փոքր հիմքով և սրունքներով, **բ)**փոքր անկյունագծով, մեծ հիմքով և մեծ սրունքով:

83. Տրված են մի ուղղի վրա չգտնվող երեք կետ՝ $A$, $B$ և $C$: Կառուցեք զուգահեռագիծ այնպես, որ նրա երեք գագաթը համընկնեն տրված կետերին: Այդպիսի քանի՞ զուգահեռագիծ է կարելի կառուցել:

84. Տրված $AB$ հատվածը բաժանեք $n$ հավասար մասերի:

Լուծում: Տանենք $AX$ ճառագայթ, որը չի գտնվում $AB$ ուղղի վրա: Նրա վրա $A$ կետից հաջորդաբար տեղադրենք $n$ հատ հավասար հատվածներ՝ $AA_1$, $A_1A_2$, …, $A_{n-1}A_n$ (նկ. 27), այսինքն՝ այնքան թվով հավասար հատվածներ, որքան մասի անհրաժեշտ է բաժանել $AB$ հատվածը (նկ. 27-ում $n=7$): Տանենք $A_nB$ հատվածը ($A_n$-ը վերջին հատվածի ծայրակետն է): Այնուհետև $A_1$, $A_2$, …, $A_{n-1}$ կետերով տանենք $A_nB$ ուղղին զուգահեռ ուղիղներ: Այս ուղիղները $AB$ հատվածը հատում են $B_1$, $B_2$, …, $B_n$ կետերում, որոնք, ըստ Թալեսի թեորեմի, $AB$ հատվածը բաժանում են $n$ հատ հավասար հատվածների:




Նկ. 27

85. Կառուցեք $ABCD$ հավասարասրուն սեղան. **ա)**տրված $AD$ հիմքով, $A$ անկյունով և $AB$ սրունքով, **բ)**տրված $BC$ հիմքով, $AB$ սրունքով և $BD$ անկյունագծով:

86. Կառուցեք շեղանկյուն. **ա)**անկյունով և այդ անկյան գագաթով անցնող անկյունագծով, **բ)**անկյունագծով և նրա հանդիպակաց անկյունով:

87. Կառուցեք շեղանկյուն. **ա)**կողմով և անկյունագծով, **բ)**երկու անկյունագծով:

88. Կառուցեք քառակուսի. **ա)**կողմով, **բ)**անկյունագծով:

89. Կառուցեք ուղղանկյուն. **ա)**երկու կից կողմերով, **բ)**կողմով և անկյունագծով, **գ)**անկյունագծով և անկյունագծերի կազմած անկյունով:

## § 5 ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄ ԲԱԶՄԱՆԻՍՏԵՐԻ ՄԱՍԻՆ

**12 Տարածական պատկերներ:** Ուսումնասիրենք իրականության մեջ հաճախ հանդիպող այնպիսի պատկերներ, որոնց պատկանող ոչ բոլոր կետերն են գտնվում մի հարթության վրա: Օրինակ՝ ձեր դասագիրքը ինչ ձևով էլ փորձեք տեղավորել սեղանի հարթության վրա, միևնույն է, սեղանի հարթությունը չի կարող ընդգրկել դասագրքի բոլոր կետերը: Երկրաչափական պատկերը, որի բոլոր կետերը չեն կարող գտնվել մի հարթության վրա, ընդունված է անվանել *տարածական պատկեր (մարմին)*: Նկար 28-ում պատկերված են երկրաչափական մարմիններ, որոնց մասին դուք ունեք նախնական պատկերացումներ: Դրանք են ուղղանկյունանիստը (նկ. 28,ա) և բուրգը (նկ. 28,բ): Տարածության մեջ այդ մարմինները սահմանափակված են *մակերևույթով*: Եթե մարմնի մակերևույթը կազմված է միայն վերջավոր թվով բազմանկյուններից, ապա այն կոչվում է *բազմանիստ*: Հաճախակի հանդիպող բազմանիստի օրինակ է ուղղանկյունանիստը (տե՛ս նկ. 28,ա), որի բոլոր նիստերը ուղղանկյուններ են:

Բազմանիստի մակերևույթը կազմող բազմանկյունները կոչվում են *նիստեր*, դրանց կողմերը՝ բազմանիստի *կողեր*, իսկ գագաթները՝ բազմանիստի *գագաթներ*:

Ծ ա ն ո թ ո ւ թ յ ո ւ ն: Տարածական պատկերները գծագրելու համար պահանջվում են որոշակի հմտություններ: Բանն այն է, որ գծագրի վրա կարող ենք պատկերել մարմնի միայն «ստվերը», քանի որ տարածական մարմինը հարթ թղթի վրա չի տեղավորվում:




ա) բ)



Նկ. 28

Այսպիսով՝ տարածական պատկերները գծագրելու համար անհրաժեշտ է առաջնորդվել մի քանի կանոններով: Թվարկենք դրանցից մի քանիսը:

ա)Եթե մարմինը դիտելիս նրա որևէ գիծը ծածկված է և չի երևում, ապա այդ գիծը գծագրի վրա նշվում է *ընդհատ գծերով*: Օրինակ՝ $AB$ հատվածը նկար 28-ում չի երևում:

բ)Տարածական մարմնի գծապատկերի վրա համեմատվող հատվածների և հատկապես անկյունների *չափերը կարող են չպահպանվել*: Օրինակ՝ 28,ա նկարում պատկերված ուղղանկյունանիստի, ասենք, $A_1B_1$ կողը պատկերված է թեքված դիրքից. նրա երկարությունը կարող է ավելի փոքր թվալ, քան $AA_1$ կողինը: Նմանապես $BAD$ անկյունը թեև իրականում ուղիղ է, սակայն նկարում երևում է իբրև սուր անկյուն:

գ)Զուգահեռ ուղիղները միշտ *պատկերվում են զուգահեռ* անկախ պատկերման դիրքից: Օրինակ՝ 28,ա նկարում $AD||BC$ , $DC||D_1C_1$ և այլն:



Նկ. 29

**(13) Զուգահեռանիստ:** Զուգահեռանիստը այն բազմանիստն է, որի մակերևույթի բոլոր բազմանկյունները զուգահեռագծեր են (նկ. 29, տե՛ս նաև 28,ա նկարը, որը ևս զուգահեռանիստի գծապատկեր է): Զուգահեռանիստի բոլոր նիստերը զուգահեռագծեր են: Յուրաքանչյուր զուգահեռանիստ ունի 6 նիստ: 28,ա նկարում դիտարկենք, օրինակ, $AA_1B_1B$ և $DD_1C_1C$ նիստերը: Դրանք չունեն ընդհանուր գագաթ (չունեն նաև ընդհանուր կող) և կոչվում են *հանդիպակաց նիստեր*: Հանդիպակաց նիստերից երկուսը, օրինակ, $ABCD$-ն և $A_1B_1C_1D_1$-ը կոչվում են զուգահեռանիստի *հիմքեր*, իսկ մյուսները՝ *կողմնային նիստեր*: Զուգահեռանիստն ունի չորս կողմնային նիստ: Զուգահեռանիստն ունի 12 կող, յուրաքանչյուր կողը միաժամանակ գտնվում է երկու նիստերի վրա: Զուգահեռանիստի յուրաքանչյուր գագաթ միաժամանակ գագաթ է նրա երեք նիստերի համար: Զուգահեռանիստն ունի 8 գագաթ:

Զուգահեռանիստի գագաթները կոչվում են *հանդիպակաց*, եթե դրանք չեն գտնվում նույն նիստի վրա: Այդպիսի գագաթ են $A$-ն և $C_1$-ը, $B$-ն և $D_1$-ը, $D$-ն և $B_1$-ը, $C$-ն և $A_1$-ը: Զուգահեռանիստի հանդիպակաց գագաթները միացնող հատվածները կոչվում են *անկյունագծեր*: Զու-

զահեռանիստի հանդիպակաց գագաթների զույգերը չորսն են, այսինքն զուգահեռանիստն ունի չորս անկյունագիծ:

Մենք գիտենք, որ զուգահեռագծի անկյունագծերը հատվում և հատման կետով կիսվում են: Պարզվում է, որ համանման հատկությամբ օժտված են նաև զուգահեռանիստի անկյունագծերը: Այն է. *զուգահեռանիստի բոլոր չորս անկյունագծերը հատվում են մի կետում և հատման կետով կիսվում են:*

**(14) Ուղղանկյունանիստ և խորանարդ:** *Այն զուգահեռանիստը, որի բոլոր նիստերը ուղղանկյուններ են, կոչվում է ուղղանկյունանիստ* (տե՛ս նկ. 28,ա): Ուղղանկյունանիստի տեսք ունեն տուփերը, արկղերը, սենյակներից շատերը և այլն: Զուգահեռանիստի տարրերին համանման՝ ուղղանկյունանիստը ևս ունի 6 նիստ, 8 կող, 12 գագաթ և 4 անկյունագիծ:

Մենք գիտենք, որ ուղղանկյան անկյունագծերը հավասար են: Պարզվում է, որ համանման հատկությամբ օժտված են նաև ուղղանկյունանիստի անկյունագծերը: Այն է. *ուղղանկյունանիստի բոլոր չորս անկյունագծերը հավասար են:*

*Այն ուղղանկյունանիստը, որի բոլոր կողերը հավասար են, կոչվում է խորանարդ:*

Այսպիսով, խորանարդի բոլոր նիստերը քառակուսիներ են: Այսինքն՝ խորանարդի մակերևույթը կազմված է *վեց* հավասար քառակուսիներից[1]:

**(15) Պրիզմա (հատվածակողմ):** Դիտենք նկար 30-ը: Նրանում պատկերված են բազմանիստեր, որոնց մակերևույթը կազմված է երկու հավասար բազմանկյուններից, իսկ մյուս բոլոր նիստերը ուղղանկյուններ են: 30,ա նկարում $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունները հավասար են, և $AA_1B_1B$, $AA_1C_1C$, $BB_1C_1C$ քառանկյուններից յուրաքանչյուրը ուղղանկյուն է: 30,բ նկարում հավասար բազմանկյուններն են $ABCDE$-ն և $A_1B_1C_1D_1E_1$-ը, իսկ մյուս պատկերները՝ $AA_1B_1B$-ն, $BB_1C_1C$-ն, $CC_1D_1D$-ն, $DD_1E_1E$-ն և $EE_1A_1A$-ն, ուղղանկյուններ են: Այդպիսի բազմանիստերը կոչվում են *ուղիղ պրիզմա*: Այդ հավասար բազմանմարմինները կոչվում են...

---

[1] Ուշագրավ է հետևյալ փաստը. նկատի ունենալով խորանարդի միանման վեց նիստեր (երեսներ) ունենալը՝ նախորդ դարերում տպագրված հայերեն դասագրքերում խորանարդին անվանել են **վեցերես**, որի ցայտուն օրինակ է զառը:



ա)



բ)

Նկ. 30

կյունները կոչվում են պրիզմայի *հիմքեր*, իսկ ուղղանկյունները՝ *կողմնային նիստեր*: Յուրաքանչյուր կողմնային նիստի հանդիպակաց երկու կողը գտնվում են հիմքերի վրա, իսկ մյուս երկու կողը միացնում են հիմքերի գագաթները: Այդ կողերը կոչվում են *կողմնային կողեր*:

Ըստ հիմքի բազմանկյան՝ պրիզման կարող է լինել եռանկյուն պրիզմա, քառանկյուն պրիզմա, հնգանկյուն պրիզմա և այլն: Դիտարկվում են նաև *թեք պրիզմաներ*, որոնց կողմնային նիստերը զուգահեռագծեր են:

Պրիզման նշանակելու համար հերթականությամբ թվարկում են նրա հիմքերի գագաթները: Օրինակ. 30,բ նկարում պատկերված է $ABCDEA_1B_1C_1D_1E_1$ պրիզման:

*n-անկյուն պրիզման ունի 3n կող, 2n գագաթ, n+2 նիստ, ընդ որում՝ նիստերից 2-ը հիմքերն են, իսկ n-ը՝ կողմնային նիստերը:*

Պարզվում է, որ պրիզմայի բոլոր կողմնային կողերը միմյանց հավասար են (իսկ նրանց ընդգրկող ուղիղները չեն հատվում):

(16) **Բուրգ:** Բուրգի մասին դուք նախնական պատկերացումներ ունեք, կարդացել և դիտել եք հաղորդումներ՝ նվիրված Աշխարհի Յոթ հրաշալիքներից մեկին՝ եգիպտական բուրգերին: Իսկ ինչպե՞ս ստանանք բուրգը՝ որպես երկրաչափական մարմին:

31,ա նկարում պատկերված է քառանկյուն բուրգ: Նրա մակերևույթը կազմված է $ABCD$ քառանկյունից և $EAB$, $EBC$, $ECD$, $EDA$ եռանկյուններից, որոնք ունեն $E$ ընդհանուր գագաթ: 31,բ նկարում պատկերված է եռանկյուն բուրգ, որը կոչվում է նաև *քառանիստ*: Բուրգն այն բազմանիստն է, որի մակերևույթը կազմված է որևէ բազմանկյունից (դա կոչվում է *հիմք*) և ընդհանուր գագաթ ունեցող եռանկյուններից,







Նկ. 31

որոնց ընդհանուր գագաթի հանդիպակաց կողմերը տվյալ բազմանկյան (հիմքի) կողմերն են: Այդ եռանկյունները կոչվում են բուրգի *կողմնային նիստեր*, դրանց ընդհանուր գագաթը՝ *բուրգի գագաթ*: Բուրգի գագաթը հիմքի բազմանկյան գագաթներին միացնող հատվածները կոչվում են *կողմնային կողեր*, իսկ գագաթի հանդիպակաց կողմերը՝ *հիմքի կողեր*:

Բուրգը, կախված հիմքի բազմանկյան կողմերի թվից, կոչվում է՝ եռանկյուն բուրգ, քառանկյուն բուրգ, հնգանկյուն բուրգ և այլն: Բուրգը նշանակելու համար սկզբում գրվում է գագաթի տառը, այնուհետև հիմքի բազմանկյան գագաթների տառերը: Նկար 28-ում պատկերված բուրգերը նշանակվում են՝ $EABCD$(ա) և $DABC$(բ):

$n$ անկյուն բուրգն ունի $2n$ կող, որոնցից $n$-ը հիմքի կողեր են, $n$-ը՝ կողմնային կողեր: Այդպիսի բուրգն ունի $n+1$ գագաթ և $n+1$ նիստ, ընդ որում՝ նիստերից մեկը հիմքն է, իսկ $n$-ը կողմնային նիստերն են:

Առանձնահատուկ է եռանկյուն բուրգը. նրա հիմքը ևս եռանկյուն է, այսինքն՝ նրա մակերևույթը կազմված է չորս եռանկյուններից: 31,բ նկարում պատկերված եռանկյուն բուրգի հիմքը $ABC$ եռանկյունն է, բուրգի գագաթը՝ $D$-ն: Այդ նույն բուրգը կարելի է դիտել այլ դիրքից ևս. օրինակ, եթե որպես հիմք դիտենք $BDC$ եռանկյունը, ապա $ABCD$ բուրգի գագաթը $A$-ն է:

## Հարցեր և խնդիրներ

**90.** $ABCDA_1B_1C_1D_1$ զուգահեռանիստի մեջ. **ա)** գտեք $B_1C_1$-ը և $DC$-ն, եթե $BC$=5սմ, $A_1B_1$=4սմ, **բ)** գտեք զուգահեռանիստի $BC$, $CD$, $CC_1$ կողերը, եթե $AB=a$, $AA_1=b$, $AD=c$:

91.Գտեք վեցանկյուն պրիզմայի կողերի, գագաթների, նիստերի թվերը:

92.Կարո՞ղ է պրիզմայի կողերի թիվը լինել. ա)13, բ)14, գ)18: Պատասխանը հիմնավորեք:

93.Կարո՞ղ է պրիզմայի նիստերի թիվը լինել. ա)13, բ)14, գ)18: Պատասխանը հիմնավորեք:

94.Ի՞նչ բազմանկյուն է պրիզմայի հիմքը, եթե պրիզման ունի. ա)18 կող, բ)24 կող, գ)9 նիստ:

95.48սմ երկարությամբ մետաղալարը բաժանել են հավասար մասերի, և այդ մասերը ընդունելով որպես կողեր՝ պատրաստել են խորանարդ: Գտեք այդ խորանարդի կողի երկարությունը:

96.Խորանարդի նիստերից մեկի պարագիծը 32սմ է: Գտեք այդ խորանարդի բոլոր կողերի երկարությունների գումարը:

97.Խորանարդի ներսում վերցված է M կետը և այն հատվածներով միացված է խորանարդի բոլոր գագաթներին: Գտեք այն բուրգերի քանակը, որոնց գագաթը M կետն է:

98.Վեցանկյուն պրիզմայի ներսում վերցված է M կետը, և այն հատվածներով միացված է պրիզմայի բոլոր գագաթներին: Գտեք այն բուրգերի քանակը, որոնց գագաթը M կետն է: Ինչպիսի՞ բուրգեր են ստացվել և յուրաքանչյուրից քանի՞ հատ:

99.Գտեք 8-անկյուն բուրգի կողերի, նիստերի և գագաթների թվերը:

100.Ինչպիսի՞ն է կոչվում բուրգը, եթե այն ունի. ա)13 նիստ, բ)10 գագաթ, գ)12 կող:

101.Կարո՞ղ է լինել այնպիսի բուրգ, որն ունի. ա)9 նիստ, բ)9 կող: Պատասխանը հիմնավորեք:

102.Քառանկյուն բուրգի հիմքը 64սմ պարագծով քառակուսի է, իսկ կողմնային նիստերը հավասարակողմ եռանկյուններ են: Գտեք բուրգի կողմնային կողերը:

103.Եռանկյուն բուրգի կողմնային նիստերը ընդհանուր գագաթ ունեցող հավասարասրուն ուղղանկյուն եռանկյուններ են: Ապացուցեք, որ բուրգի հիմքը հավասարակողմ եռանկյուն է:

## ԳԼՈՒԽ VI-Ի ԻՆՔՆԱՍՏՈՒԳՄԱՆ ՀԱՐՑԵՐ

1.Բացատրեք, թե որ պատկերն է կոչվում բազմանիստ: Ի՞նչ են բազմանիստի գագաթը, կողերը, անկյունագծերը և պարագիծը:

2.Ո՞ր բազմանիստներն են կոչվում ուռուցիկ: Բացատրեք, թե որ անկյուններն են կոչվում ուռուցիկ բազմանիստի անկյունները:

3.Արտածեք բանաձև ուռուցիկ n-անկյուն պրիզմայի գագաթների թվի հաշվելու համար:

4. Գծագրեք քառանկյուն և ցույց տվեք նրա անկյունագծերը, հանդիպակաց կողմերը, հանդիպակաց գագաթները և անկյունները:
5. Ինչի՞ է հավասար ուռուցիկ քառանկյան անկյունների գումարը:
6. Սահմանեք զուգահեռագիծը: Զուգահեռագիծը արդյո՞ք ուռուցիկ քառանկյուն է:
7. Ապացուցեք, որ զուգահեռագծի հանդիպակաց կողմերը հավասար են, և հանդիպակաց անկյունները հավասար են:
8. Ապացուցեք, որ զուգահեռագծի անկյունագծերը հատման կետով կիսվում են:
9. Ձևակերպեք և ապացուցեք զուգահեռագծի հայտանիշները:
10. Ի՞նչ է եռանկյան միջին գիծը: Ձևակերպեք և ապացուցեք եռանկյան միջին գծի հատկությունը:
11. Ձևակերպեք Թալեսի թեորեմը: Ինչպե՞ս են տրված հատվածը բաժանում տրված թվով հավասար մասերի:
12. Ո՞ր քառանկյունն է կոչվում սեղան: Ինչպե՞ս են կոչվում սեղանի կողմերը:
13. Ո՞ր սեղանն է կոչվում հավասարասրուն, ո՞րը՝ ուղղանկյուն:
14. Ի՞նչ է սեղանի միջին գիծը: Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ սեղանի միջին գծի մասին:
15. Ո՞ր քառանկյունն է կոչվում ուղղանկյուն: Ապացուցեք, որ ուղղանկյան անկյունագծերը հավասար են:
16. Ապացուցեք, որ եթե զուգահեռագծի անկյունագծերը հավասար են, ապա այն ուղղանկյուն է:
17. Ո՞ր քառանկյունն է կոչվում շեղանկյուն: Ապացուցեք, որ շեղանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են և դրանք շեղանկյան անկյունները կիսում են:
18. Ո՞ր քառանկյունն է կոչվում քառակուսի: Ձևակերպեք քառակուսու հիմնական հատկությունները:
19. Ո՞ր երկու կետերն են կոչվում համաչափ՝ տրված ուղղի նկատմամբ:
20. Ո՞ր պատկերն է կոչվում համաչափ՝ տրված ուղղի նկատմամբ:
21. Ո՞ր երկու կետերն են կոչվում համաչափ՝ տրված կետի նկատմամբ:
22. Ո՞ր պատկերն է կոչվում համաչափ՝ տրված կետի նկատմամբ:
23. Բերեք պատկերների օրինակներ, որոնք օժտված են. ա)առանցքային համաչափությամբ, բ)կենտրոնային համաչափությամբ, գ)առանցքային և կենտրոնային համաչափությամբ:
24. Նկարագրեք, թե ինչ պատկեր է բազմանիստը, բերեք բազմանիստի օրինակ և նշեք նրա նիստերը, կողերը, գագաթները:
25. Բացատրեք, թե ինչ կանոններից եք օգտվում տարածական պատկերները գծագրելիս:

26. Նկարագրեք, թե ինչ է զուգահեռանիստը: Քանի՞ նիստ, քանի՞ կող և քանի՞ գագաթ ունի զուգահեռանիստը:

27. Նկարագրեք, թե ինչ են ուղղանկյունանիստը և խորանարդը: Ինչպիսի նիստերից է կազմված խորանարդի մակերևույթը:

28. Նկարագրեք, թե ինչ է պրիզման: Քանի՞ կող, քանի՞ նիստ, քանի՞ գագաթ ունի $n$-անկյան պրիզման:

29. Նկարագրեք, թե ինչ է բուրգը: Ի՞նչ են բուրգի կողմնային նիստերը: Քանի՞ կող և քանի՞ գագաթ ունի $n$-անկյուն բուրգը:

## Լրացուցիչ խնդիրներ

**104.** Ապացուցեք, որ եթե ուռուցիկ քառանկյան ոչ բոլոր անկյուններն են իրար հավասար, ապա դրանցից գոնե մեկը բութ է:

**105.** $ABCD$ զուգահեռագծի պարագիծը 46սմ է, $AB$=14սմ: Զուգահեռագծի ո՞ր կողմն է հատում $A$ անկյան կիսորդը: Գտեք այն հատվածները, որոնք առաջանում են այդ հատման դեպքում:

**106.** Զուգահեռագծի կողմերը հավասար են 10սմ և 3 սմ: Մեծ կողմին առընթեր անկյունների կիսորդները հանդիպակաց կողմը տրոհում են երեք հատվածի: Գտեք այդ հատվածները:

**107.** Հավասարասրուն եռանկյան հիմքի կամայական կետով տարված են եռանկյան սրունքներին զուգահեռ ուղիղներ: Ապացուցեք, որ ստացված քառանկյան պարագիծը հավասար է տրված եռանկյան սրունքների գումարին:

**108.** Անհավասար կից կողմեր ունեցող զուգահեռագծի մեջ տարված են անկյունների կիսորդները: Ապացուցեք, որ նրանց հատումից առաջանում է ուղղանկյուն:

**109.** Ապացուցեք, որ ուռուցիկ քառանկյունը զուգահեռագիծ է, եթե նրա երկու կից կողմերից յուրաքանչյուրին առընթեր անկյունների գումարը $180^0$ է:

**110.** Ապացուցեք, որ ուռուցիկ քառանկյունը զուգահեռագիծ է, եթե նրա հանդիպակաց անկյունները զույգ առ զույգ հավասար են:

**111.** $K$ կետը $ABC$ եռանկյան $AM$ միջնագծի միջնակետն է: $BK$ ուղիղը $D$ կետում հատում է $AC$ կողմը: Ապացուցեք, որ $AD=\frac{1}{3}AC$:

**112.** $M$ և $N$ կետերը $ABCD$ զուգահեռագծի $AD$ և $BC$ կողմերի միջնակետերն են: Ապացուցեք, որ $AN$ և $MC$ ուղիղները $BD$ անկյունագիծը բաժանում են երեք հավասար մասի:

**113.** $ABCD$ շեղանկյան $B$ գագաթից տարված են $AD$ և $DC$ ուղիղներին ուղղահայացներ՝ $BK$-ն և $BM$-ը: Ապացուցեք, որ $BD$ ճառագայթը $KBM$ անկյան կիսորդն է:

**114.** Ապացուցեք, որ շեղանկյան անկյունագծերի հատման կետը հավասարահեռ է նրա կողմերից:

**115.** Ապացուցեք, որ եռանկյան գագաթը հանդիպակաց կողմի կամայական կետին միացնող հատվածի միջնակետը գտնվում է այն հատվածի վրա, որի ծայրակետերը մյուս երկու կողմերի միջնակետերն են:

**116.** $ABCD$ քառակուսու $AC$ անկյունագիծը 18,4սմ է: $A$ կետով անցնող և $AC$ ուղղին ուղղահայաց ուղիղը հատում է $BC$ և $CD$ ուղիղները՝ համապատասխանաբար $M$ և $N$ կետերում: Գտեք $MN$-ը:

**117.** $ABCD$ քառակուսու $AC$ անկյունագծի վրա $M$ կետը վերցված է այնպես, որ $AM=AB$: $M$ կետով տարված է $AC$ ուղղին ուղղահայաց ուղիղ, որը $BC$-ն հատում է $H$ կետում: Ապացուցեք, որ $BH=HM=MC$:

**118.** $AD$ մեծ հիմքով $ABCD$ սեղանի $AC$ անկյունագիծը ուղղահայաց է $CD$ սրունքին: $\angle BAC=\angle CAD$: Գտեք $AD$-ն, եթե սեղանի պարագիծը 20սմ է, իսկ $\angle D=60^0$:

**119.** Սեղանի հիմքերից մեկին առընթեր անկյունների գումարը $90^0$ է: Ապացուցեք, որ սեղանի հիմքերի տարբերությունը կրկնակի մեծ է դրանց միջնակետերը միացնող հատվածից:

**120.** Ապացուցեք, որ զուգահեռագծի անկյունագծերի հատման կետը նրա համաչափության կենտրոնն է:

**121.** Համաչափության քանի՞ կենտրոն ունի զուգահեռ ուղիղների զույգը:

**122*.** Ապացուցեք, որ եթե պատկերն ունի համաչափության երկու փոխուղղահայաց առանցքներ, ապա դրանց հատման կետը այդ պատկերի համաչափության կենտրոն է:

ԳԼՈՒԽ VII

# ՇՐՋԱՆԱԳԻԾ



## § 1 ԼԱՐԻ ՄԻՋՆԱԿԵՏՈՎ ԱՆՑՆՈՂ ՇԱՌԱՎԻՂԸ

(17) **Երկու կետերով անցնող շրջանագիծը:** Շրջանագիծը և նրա մի քանի հատկությունները դուք արդեն ուսումնասիրել եք 6-րդ դասարանում: Հիշենք, որ շրջանագիծն այն երկրաչափական պատկերն է, որը կազմված է հարթության բոլոր այն կետերից, որոնք գտնվում են տրված կետից տրված հեռավորության վրա: Տրված կետը շրջանագծի կենտրոնն է, իսկ տրված հեռավորությունը հավասար է շառավիղի երկարությանը:

Նշենք, որ շրջանագիծը որոշելու կամ կառուցելու համար կարևոր է որոշել նրա կենտրոնը և շառավիղը:

Պարզաբանենք այն հարցը, թե կարո՞ղ ենք ստանալ շրջանագիծ, եթե տրված են երկու կետ, որոնցով այն անցնում է:

Նախ հիշենք հատվածի միջնուղղահայացի հատկությունը (հատվածին միջնուղղահայաց կառուցելը դուք գիտեք 6-րդ դասարանի դասընթացից): Հատվածի միջնուղղահայացի յուրաքանչյուր կետ հավասարահեռ է այդ հատվածի ծայրակետերից: Այժմ մենք ցույց տանք, որ տեղի ունի նաև հակադարձ պնդումը, այն է. *հատվածի ծայրակետերից հավասարահեռ յուրաքանչյուր կետ գտնվում է այդ հատվածի միջնուղղահայացի վրա:*

Դիտենք կամայական $O$ կետ, որը հավասարահեռ է $AB$ հատվածի ծայրակետերից. $OA=OB$ (նկ. 32,ա): Դիցուք՝ $M$-ը $AB$ հատվածի միջնակետն է, և այդ կետով անցնող $m$ ուղիղը ուղղահայաց է $AB$-ին: Ցույց տանք, որ $O$ կետը գտնվում է $m$ ուղղի վրա:

Եթե $O$ կետը գտնվում է $AB$ ուղղի վրա, և $AO=OB$, ապա պարզ է, որ $O$ կետը համընկնում է $M$ կետին և, ուրեմն, գտնվում է $m$ ուղղի վրա:







Նկ. 32

Եթե $O$ կետը չի գտնվում $AB$ ուղղի վրա, ապա $A$, $B$ և $O$ կետերով կարելի է կառուցել եռանկյուն: Դիտենք $AOB$ հավասարասրուն եռանկյունը ($AO=OB$), որի $AB$ հիմքին տարված միջնագիծը $OM$-ն է: Հետևաբար՝ $OM$ հատվածը նաև բարձրություն է. $OM \perp AB$: Ըստ ուղղին տրված կետով անցնող ուղղահայացի միակության՝ $MO$ ուղիղը և $m$ ուղիղը համընկնում են, այսինքն՝ $O$ կետը գտնվում է $m$ միջնուղղահայացի վրա:

Այժմ վերադառնանք մեր սկզբնական խնդրին: Եթե տրված են երկու՝ $A$ և $B$ կետեր, ապա այդ ծայրակետերով $AB$ հատվածի միջնուղղահայացի վրա վերցված յուրաքանչյուր կետ կարող է դիտվել որպես մի շրջանագծի կենտրոն, որն անցնում է այդ երկու կետերով: Բայց քանի որ հատվածի միջնուղղահայացի վրա գտնվում են անվերջ շատ կետեր, ուրեմն տրված երկու կետերով անցնող շրջանագծերը ևս անվերջ շատ են:

**(18) Լարի միջնակետով անցնող շառավիղը:** Պարզաբանենք հաճախակի կիրառություն ունեցող մի հարց. միմյանց նկատմամբ ինչպե՞ս են դասավորված շրջանագծի՝ տրամագիծ չհանդիսացող լարը և նրա միջնակետով անցնող շառավիղը:

Դիցուք՝ $O$ կենտրոնով շրջանագծի $OC$ շառավիղն անցնում է $AB$ լարի $M$ միջնակետով (նկ. 32,բ): Քանի որ շրջանագիծն անցնում է $AB$ հատվածի ծայրակետերով, ապա շրջանագծի $O$ կենտրոնը գտնվում է $AB$ հատվածի միջնուղղահայացի վրա: Դրանից հետևում է, որ $OM$ ուղիղը, ուրեմն նաև $OC$ շառավիղը ուղղահայաց է $AB$ լարին: Նմանապես կարելի է ցույց տալ, որ եթե $OC$ շառավիղը ուղղահայաց է $AB$ լարին և նրա հետ հատվում է $M$ կետում, ապա $M$-ը $AB$ հատվածի միջնակետն է:

*Այսպիսով. ա)լարի միջնակետով անցնող շառավիղը ուղղահայաց է այդ լարին, և բ)լարը հատող և նրան ուղղահայաց շառավիղն անցնում է այդ լարի միջնակետով:*

**19. Շրջանագծի որոշումը երեք կետերով:** Պարզաբանենք, թե ինչպես է որոշվում այն շրջանագիծը, որն անցնում է տրված երեք կետերով: Հարցն այն է, թե կարելի՞ է, արդյոք, շրջանագիծ տանել երեք կետերի ցանկացած դասավորության դեպքում:

Դիցուք՝ տրված են երեք՝ $A$, $B$ և $C$ կետեր, և պահանջվում է գտնել այնպիսի $O$ կետ, որը հավասարահեռ է այդ երեք կետերից: Դա նույնն է, որ գտնենք այնպիսի $O$ կետ, որը կարող է դիտվել որպես այդ երեք կետերով անցնող շրջանագծի կենտրոն:

Մենք արդեն գիտենք, որ $A$ և $B$ կետերով անցնող յուրաքանչյուր շրջանագծի կենտրոնը գտնվում է $AB$ հատվածի $m$ միջնուղղահայացի վրա: Նմանապես, $BC$ հատվածի $n$ միջնուղղահայացի վրա է գտնվում $B$ և $C$ կետերով անցնող յուրաքանչյուր շրջանագծի կենտրոնը: Ուրեմն՝ որպեսզի շրջանագիծն անցնի $A$, $B$ և $C$ կետերով, նրա կենտրոնը միաժամանակ գտնվելու է ինչպես $m$, այնպես էլ $n$ ուղղի վրա:

Քննարկենք երկու դեպք.

1)$A$, $B$ և $C$ կետերը գտնվում են մի ուղղի վրա: Այս դեպքում $m$ և $n$ ուղիղները զուգահեռ են՝ որպես միևնույն ուղղին ուղղահայաց ուղիղներ: Այն, որ $m$ և $n$ ուղիղները չեն հատվում, նշանակում է, որ գոյություն չունի այնպիսի կետ, որը հավասարահեռ է մի ուղղի վրա գտնվող երեք՝ $A$, $B$, $C$ կետերից: Իսկ դրանից հետևում է, որ այդպիսի $A$, $B$ և $C$ կետերը չեն կարող գտնվել մի շրջանագծի վրա:

2)$A$, $B$ և $C$ կետերը մի ուղղի վրա չեն գտնվում: Այս դեպքում $m$ և $n$ ուղիղները հատվում են ինչ որ մի $O$ կետում, և $OA=OB$, $OB=OC$ (նկ. 33): Օգտվելով վերոհիշյալ հավասարություններից՝ ստանում ենք, որ $OA=OC$: Այսինքն՝ $O$ կետը հավասարահեռ է նաև $A$ և $C$ կետերից, ուստի $O$ կետը գտնվում է $AC$ հատվածի $p$ միջնուղղահայացի վրա ևս: Հենց $O$ կետն էլ այն շրջանագծի կենտրոնն է, որն անցնում է $A$, $B$ և $C$ կետերով:



Նկ. 33

Այսպիսով՝ ա)*մի ուղղի վրա գտնվող երեք կետերով շրջանագիծ չի անցնում,* բ)*մի ուղղի վրա չգտնվող երեք կետերով անցնում է մի շրջանագիծ, որի կենտրոնը այդ կետերը միացնող հատվածներից որևէ երկուսի միջնուղղահայացների հատման կետն է:*

Բերված դատողություններից օգտվելով՝ կարող ենք նկարագրել, թե ինչպես կառուցել մի ուղղի վրա չգտնվող երեք կետերով անցնող շրջանագիծը: Դրա համար անհրաժեշտ է. ա)տանել այդ կետերը միացնող հատվածներից որևէ երկուսը, բ)կառուցել այդ հատվածների միջնուղղահայացները և գտնել դրանց հատման կետը (շրջանագծի կենտրոնը), գ)կարկինի ծայրակետը դնել կենտրոնի վրա, տալ բացվածք՝ կենտրոնից մինչև տրված կետերից որևէ մեկի հեռավորության չափով և գծել շրջանագիծը:

## Հարցեր և խնդիրներ

**123.** Ապացուցեք, որ հատվածի ծայրակետերով անցնող շրջանագծի կենտրոնը գտնվում է այդ հատվածի համաչափության առանցքի վրա:

**124.** Ապացուցեք, որ շրջանագծի կենտրոնից ելնող ճառագայթը շրջանագիծը հատում է մեկ կետում:

**125.** Կառուցեք տրված շառավիղով շրջանագիծ, որն անցնի տրված երկու կետերով: Այդպիսի քանի՞ շրջանագիծ է հնարավոր կառուցել: Խնդիրը արդյոք մի՞շտ լուծում ունի:

**126.** Տրված ուղղի վրա գտեք այն կետը, որը հավասարահեռ է տրված երկու կետերից: Դիտարկեք բոլոր հնարավոր դեպքերը:

**127.** Տրված են մի շրջանագծի վրա գտնվող երեք կետ: Ապացուցեք, որ այդ կետերը չեն գտնվում մի ուղղի վրա:

**128.** Պարզաբանեք, թե հատվածի և կետի ինչպիսի՞ դասավորության դեպքում է հնարավոր տանել շրջանագիծ, որն անցնի տվյալ կետով և հատվածի ծայրակետերով:

**129.** Նկարագրեք չորս կետերի դասավորության որևէ դեպք, երբ այդ կետերով անցնող շրջանագիծ. **ա)**գոյություն ունի, **բ)**գոյություն չունի:

**130.** $AB$ հատվածի $A$ ծայրակետը գտնվում է $O$ կենտրոնով շրջանագծի վրա: Հայտնի է, որ $OAB$ անկյունը փոքր է $OBA$ անկյունից: Ապացուցեք, որ $B$ կետը չի գտնվում այդ շրջանագծի վրա:

**131.** $AB$ հատվածը $O$ կենտրոնով շրջանագծի տրամագիծն է, իսկ $AC$-ն և $BC$-ն՝ այդ շրջանագծի հավասար լարերը: Գտեք $AOC$ անկյունը:

**132.** $O$ կենտրոնով շրջանագծի $A$ կետով տարված են $AB$ տրամագիծը և $AC$ լարը: Գտեք $BC$ լարը, եթե հայտնի է, որ $OK$= 4սմ, որտեղ $K$-ն $AC$ լարի միջնակետն է:

**133.** $A$, $B$ և $C$ կետերով անցնող շրջանագծի կենտրոնը $AB$ հատվածի միջնակետն է: Ապացուցեք, որ $ACB$ անկյունը ուղիղ է:

**134.** $A$, $B$ և $C$ կետերով անցնող շրջանագծի կենտրոնը $AB$ հատվածի միջնակետն է: Գտեք $ABC$ անկյունը, եթե $AC$ լարի երկարությունը հավասար է շրջանագծի շառավիղին:

**135.** Ապացուցեք, որ մի ուղղի վրա գտնվող 3 կամ ավելի թվով կետերով շրջանագիծ չի անցնում:

## § 2 ՇՐՋԱՆԱԳԾԻ ՇՈՇԱՓՈՂ

**(20) Շրջանագծի և ուղղի փոխադարձ դասավորությունը:** Պարզաբանենք, թե քանի՞ ընդհանուր կետ կարող են ունենալ շրջանագիծը և ուղիղը՝ կախված նրանց փոխադարձ դասավորությունից:

Պարզ է, որ եթե ուղիղն անցնում է շրջանագծի կենտրոնով, ապա այն շրջանագիծը հատում է երկու կետում, այն է՝ տվյալ ուղղի վրա գտնվող տրամագծի ծայրակետերում:

Դիցուք՝ $p$ ուղիղը չի անցնում $r$ շառավիղով շրջանագծի $O$ կենտրոնով: Տանենք $p$ ուղղին $OH$ ուղղահայացը և այդ ուղղահայացի երկարությունը, այն է՝ $O$ կենտրոնից $p$ ուղղի հեռավորությունը, նշանակենք $d$ (նկ. 34): Ուղղի և շրջանագծի փոխադարձ դասավորությունը հետազոտենք՝ համեմատելով $d$-ն և $r$-ը: Դիտարկենք երեք դեպք:

1) $d<r$: Այս դեպքում $p$ ուղղին $O$ կետից տարված $OH$ ուղղահայացը փոքր է $r$-ից: Մյուս կողմից՝ նույն $O$ կետից $p$ ուղղին կարելի է










Նկ. 34

տանել $d$-ից մեծ ցանկացած երկարությամբ թեքեր: Ուրեմն՝ կարող ենք պատկերացնել, որ գոյություն ունի այնպիսի $OA$ թեք, որի երկարությունը $r$ է: Իսկ դա նշանակում է, որ $A$ կետը գտնվում է շրջանագծի վրա: Բայց շրջանագծի վրա է գտնվում նաև $A$ կետի համաչափ $B$ կետը՝ $OH$ առանցքի նկատմամբ (կարող եք համոզվել, որ եթե $HB=HA$, ապա $OHB$ և $OHA$ ուղղանկյուն եռանկյունները հավասար են, և, ուրեմն, $OB=OA=r$):

Ապացուցենք, որ $p$ ուղիղը և տրված շրջանագիծը բացի նշված $A$ և $B$ կետերից ուրիշ ընդհանուր կետեր չունեն: Եթե ենթադրենք, որ դրանք ունեն ևս մեկ այլ ընդհանուր $C$ կետ, ապա կստացվի, որ $O$ կետը գտնվում է $AC$ հատվածի միջնուղղահայացի վրա: Իսկ դրանից կհետևի, որ $O$ կետից $p$ ուղղին հնարավոր է տանել երկու ուղղահայաց, ինչը հնարավոր չէ:

Այսպիսով՝ *եթե շրջանագծի կենտրոնից մինչև ուղիղը եղած հեռավորությունը փոքր է շրջանագծի շառավիղից* ($d<r$), *ապա այդ ուղիղը և շրջանագիծը ունեն երկու ընդհանուր կետեր:* Այդպիսի ուղիղը կոչվում է շրջանագծին *հատող*:

2)$d=r$: Այս դեպքում $OH=r$, այսինքն $H$ կետը գտնվում է շրջանագծի վրա և, ուրեմն, այն շրջանագծի և ուղղի ընդհանուր կետ է (նկ. 34,բ): $p$ ուղիղը և շրջանագիծը այլ ընդհանուր կետ չունեն: Ուղղի՝ $H$-ից տարբեր յուրաքանչյուր $M$ կետի համար $OM>OH=r$ ($OH$ ուղղահայացը փոքր է $OM$ թեքից): Հետևաբար՝ $M$ կետը շրջանագծի վրա չի գտնվում:

Այսպիսով՝ *եթե շրջանագծի կենտրոնից մինչև ուղիղը եղած հեռավորությունը հավասար է շրջանագծի շառավիղին, ապա ուղիղը և շրջանագիծը ունեն միայն մեկ ընդհանուր կետ:*

3)$d>r$: Այս դեպքում $OH>r$, ուրեմն՝ $p$ ուղղի ցանկացած $M$ կետի համար $OM \geq OH>r$ (նկ. 34,գ): Հետևաբար՝ $M$ կետը շրջանագծի վրա չի գտնվում:

Այսպիսով՝ *եթե շրանագծի կենտրոնից մինչև ուղիղը եղած հեռավորությունը մեծ է շրջանագծի շառավիղից, ապա այդ ուղիղը և շրջանագիծը ընդհանուր կետ չունեն:*

**(21) Շրջանագծի շոշափող:** Մենք պարզաբանեցինք, որ ուղիղը և շրջանագիծը կարող են ունենալ մեկ կամ երկու ընդհանուր կետեր,

կարող են նաև չունենալ որևէ ընդհանուր կետ: *Ուղիղը, որը շրջանագծի հետ ունի միայն մեկ ընդհանուր կետ, կոչվում է այդ շրջանագծի շոշափող, իսկ նրանց ընդհանուր կետը կոչվում է ուղղի և շրջանագծի շոշափման կետ:* Նկար 35-ում $p$ ուղիղը $O$ կենտրոնով շրջանագծի շոշափող է, իսկ $A$-ն՝ շոշափման կետ:

Ապացուցենք թեորեմ շոշափողի հատկության մասին:



Նկ. 35

Թ ե ո ր ե մ: *Շրջանագծի շոշափողն ուղղահայաց է շոշափման կետով տարված շառավղին:*

Ա պ ա ց ու ց ու մ: Դիցուք՝ $p$-ն $O$ կենտրոնով շրջանագծի շոշափողն է, իսկ $A$-ն՝ շոշափման կետը (տե՛ս նկ. 35): Ապացուցենք, որ $p$ շոշափողը ուղղահայաց է $OA$ շառավղին:

Ենթադրենք այդպես չէ: Այդ դեպքում $OA$-ն կլինի $p$ ուղղին տարված թեք: Քանի որ $O$ կետից $p$ ուղղին տարված ուղղահայացը փոքր է $OA$ թեքից, ապա ստացվում է, որ շրջանագծի $O$ կենտրոնի հեռավորությունը $p$ ուղղից ավելի փոքր է, քան շառավիղը: Հետևաբար՝ $p$ ուղիղը և շրջանագիծը կունենան երկու ընդհանուր կետեր: Բայց դա հակասում է պայմանին, ըստ որի $p$ ուղիղը շոշափող է: Այսպիսով՝ $p$ ուղիղը ուղղահայաց է $OA$ շառավղին:

Թեորեմն ապացուցված է:

Դիտարկենք $O$ կենտրոնով շրջանագծի երկու շոշափողներ, որոնք անցնում են $A$ կետով և շրջանագիծը շոշափում են $B$ և $C$ կետերում (նկ. 36): $AB$ և $AC$ հատվածներն անվանենք *$A$ կետից տարված շոշափողների հատվածներ*: Դրանք օժտված են հետևյալ հատկությամբ, որը բխում է ապացուցված թեորեմից:



Նկ. 36

*Միևնույն կետից շրջանագծին տարված երկու շոշափողների հատվածները հավասար են և կազմում են հավասար անկյուններ այն ուղղի հետ, որն անցնում է այդ կետով և շրջանագծի կենտրոնով:*

Այս պնդումն ապացուցելու համար դիտենք նկար 36-ը: Ըստ շոշափողի մասին թեորեմի՝ անկյուններ 1-ը և 2-ը ուղիղ են, ուրեմն՝ $ABO$ և $ACO$ եռանկյունները ուղղանկյուն եռանկյուն են: Դրանք հավասար եռանկյուններ են, քանի որ ունեն ընդհանուր $OA$ ներքնաձիգ և հավասար՝ $OB$ և $OC$ էջեր: Հետևաբար՝ $AB=AC$ և $\angle 3=\angle 4$, ինչը և պահանջվում էր ապացուցել:

Այժմ ապացուցենք շոշափողի հատկության մասին թեորեմի հակադարձ թեորեմը (*շոշափողի հայտանիշը*):

Թ ե ո ր ե մ : *Եթե ուղիղն անցնում է շառավիղի՝ շրջանագծի վրա գտնվող ծայրակետով և ուղղահայաց է այդ շառավիղին, ապա այն շոշափող է:*

Ա պ ա ց ո ւ յ ց ո ւ մ : Թեորեմի պայմանից հետևում է, որ այդ շառավիղը շրջանագծի կենտրոնից տվյալ ուղղին տարված ուղղահայացն է: Ուրեմն շրջանագծի կենտրոնից մինչև այդ ուղիղը եղած հեռավորությունը հավասար է շառավիղին: Հետևաբար՝ շրջանագիծը և այդ ուղիղը ունեն միայն մեկ ընդհանուր կետ: Բայց դա հենց նշանակում է, որ տվյալ ուղիղը շրջանագծի շոշափող է:

Թեորեմն ապացուցված է:

Այս թեորեմի հիման վրա լուծվում են շոշափողի կառուցման խնդիրները: Լուծենք այդպիսի խնդիրներից մեկը:

Խ ն դ ի ր : *O* կենտրոնով շրջանագծի վրա տրված *A* կետով տանել այդ շրջանագծի շոշափող:

Լ ո ւ ծ ո ւ մ : Տանենք *OA* ուղիղը, իսկ այնուհետև կառուցենք *p* ուղիղը, որն անցնում է *A* կետով և ուղղահայաց է *OA* ուղղին: Ըստ շոշափողի հայտանիշի՝ *p* ուղիղը որոնելի շոշափողն է:

## Խնդիրներ

**136.** Դիցուք՝ $d$-ն $r$ շառավիղով շրջանագծի կենտրոնի հեռավորությունն է $p$ ուղղից: Ինչպե՞ս են միմյանց նկատմամբ դասավորված շրջանագիծը և $p$ ուղիղը, եթե. **ա)** $r=16$սմ, $d=12$սմ, **բ)** $r=5$սմ, $d=4,2$սմ, **գ)** $r=7,2$դմ, $d=3,7$դմ, **դ)** $r=8$սմ, $d=1,2$դմ, **ե)** $r=5$սմ, $d=50$մմ:

**137.** *A* կետի և շրջանագծի կենտրոնի հեռավորությունը փոքր է շրջանագծի շառավիղից: Ապացուցեք, որ *A* կետով անցնող յուրաքանչյուր ուղիղ այդ շրջանագծի հատող է:

**138.** $ABC$ եռանկյան մեջ $AB$=10սմ, $\angle C=90^{\circ}$, $\angle B=30^{\circ}$: Պահանջվում է տանել $A$ կենտրոնով շրջանագիծ: Ինչպիսի՞ն պետք է լինի այդ շրջանագծի շառավիղը, որպեսզի $BC$ ուղիղը. **ա)**շոշափի շրջանագիծը, **բ)**շրջանագծի հետ չունենա ընդհանուր կետ, **գ)**շրջանագծի հետ ունենա ընդհանուր կետեր:

**139.** Տրված է $ABCD$ քառակուսին, որի անկյունագիծը 6սմ է: Տանել շրջանագիծ, որի կենտրոնը լինի $A$-ն: Ի՞նչ երկարություն պետք է ունենա շրջանագծի շառավիղը, որպեսզի $BD$ անկյունագիծն ընդգրկող ուղիղը լինի. **ա)**շրջանագծի շոշափող, **բ)**շրջանագծի հատող:

**140.** $AB$ և $CD$ հատվածները $O$ կենտրոնով շրջանագծի տրամագծեր են: Հաշվեք $AOD$ եռանկյան պարագիծը, եթե հայտնի է, որ $CB$=13սմ, $AB$=16սմ:

**141.** $O$ կենտրոնով շրջանագծի $OM$ շառավիղն անցնում է $AB$ լարի միջնակետով: Ապացուցեք, որ շրջանագծի $M$ կետով տարված շոշափողը զուգահեռ է $AB$ լարին:

**142.** Շրջանագծի $A$ կետով տարված են շոշափող և շառավիղին հավասար լար: Գտեք դրանց կազմած անկյունը:

**143.** Շրջանագծի շառավիղին հավասար $AB$ լարի ծայրակետերով տարված են այդ շրջանագծի շոշափողներ, որոնք հատվում են $C$ կետում: Գտեք $ABC$ եռանկյան անկյունները:

**144.** $AB$ տրամագծի և $AC$ լարի կազմած անկյունը $30^{\circ}$ է: $C$ կետով տարված է շրջանագծի շոշափող, որը $AB$ ուղիղը հատում է $D$ կետում: Ապացուցեք, որ $ACD$ եռանկյունը հավասարասրուն է:

**145.** $AB$ ուղիղը $B$ կետում շոշափում է $O$ կենտրոնով և $r$=1,5սմ շառավիղով շրջանագիծը: Գտեք $ABO$ եռանկյան անկյունները, եթե $AO$=3սմ:

**146.** Տրված է $O$ կենտրոնով և 4,5սմ շառավիղով շրջանագիծ: $A$ կետն այնպիսին է, որ $AO$=9սմ: $A$ կետով տարված են այդ շրջանագծի երկու շոշափողներ: Գտեք դրանց կազմած անկյունը:

**147.** $AB$-ն և $AC$-ն $O$ կենտրոնով շրջանագծին $A$ կետից տարված շոշափողների հատվածներն են: Գտեք $BAC$ անկյունը, եթե $AO$ հատվածի միջնակետը գտնվում է այդ շրջանագծի վրա:

**148.** $MA$ և $MB$ ուղիղները $A$ և $B$ կետերում շոշափում են $O$ կենտրոնով շրջանագիծը: $C$ կետը $O$ կետի համաչափն է $B$ կետի նկատմամբ: Ապացուցեք, որ $\angle AMC=3\angle BMC$:

**149.** Տրված շրջանագծի $AB$ տրամագծի ծայրակետերից տարված են $AA_1$ և $BB_1$ ուղղահայացներ շրջանագծի այն շոշափողին, որն

ուղղահայաց չէ այդ $AB$ տրամագծին: Ապացուցեք, որ շոշափման կետը $A_1B_1$ հատվածի միջնակետն է:

**150.** Տրված է 10սմ շառավիղով շրջանագիծ և մի կետ, որի հեռավորությունը շրջանագծի կենտրոնից 3սմ է: Գտեք այդ կետից մինչև շրջանագծի կետերը եղած ամենամեծ և ամենափոքր հեռավորությունները: Հիմնավորեք պատասխանը:

**151.** $ABC$ եռանկյան $B$ անկյունն ուղիղ է: Ապացուցեք, որ. **ա)** $BC$ ուղիղը $A$ կենտրոնով և $AB$ շառավիղով շրջանագծի շոշափող է, **բ)** $AB$ ուղիղը $C$ կենտրոնով և $CB$ շառավիղով շրջանագծի շոշափող է, **գ)** $AC$ ուղիղը $B$ գագաթով և $BA$, $BC$ շառավիղներով շրջանագծերի շոշափող չէ:

**152.** Կառուցեք շրջանագծի շոշափող, որը. **ա)** զուգահեռ է տրված ուղղին, **բ)** ուղղահայաց է տրված ուղղին:

## § 3 ԿԵՆՏՐՈՆԱՅԻՆ ԵՎ ՆԵՐԳԾՅԱԼ ԱՆԿՅՈՒՆՆԵՐ

**22** **Շրջանագծի աղեղի աստիճանային չափը:** Շրջանագծի վրա նշենք երկու կետ՝ $A$-ն և $B$-ն: Դրանք շրջանագիծը տրոհում են երկու աղեղի: Այդ աղեղները տարբերելու համար նրանցից յուրաքանչյուրի վրա նշենք միջանկյալ կետ, օրինակ՝ $L$-ը և $M$-ը (նկ. 37): Աղեղները նշանակվում են այսպես. $\cup ALB$ և $\cup AMB$: Երբեմն նշանակվում են նաև առանց միջանկյալ տառի՝ $\cup AB$ (երբ պարզ է լինում, թե խոսքը աղեղներից որի մասին է):



Նկ. 37

Աղեղը կոչվում է *կիսաշրջանագիծ*, եթե նրա ծայրերը միացնող հատվածը այդ շրջանագծի տրամագիծ է: 38,ա նկարում պատկերված են երկու կիսաշրջանագիծ, որոնցից մեկը նշագծված է հաստ գծով:

Անկյունը, որի գագաթը շրջանագծի կենտրոնն է, կոչվում է նրա *կենտրոնային անկյուն:* Դիցուք՝ $O$ կենտրոնով շրջանագծի կենտրոնային անկյան կողմերը շրջանագիծը հատում են $A$ և $B$ կետերում: $AOB$ կենտրոնային անկյանը համապատասխանում են $A$ և $B$ ծայրերով երկու աղեղ (նկ. 38): Եթե $\angle AOB$-ն փռված է, ապա նրան համապատասխանում են երկու կիսաշրջանագիծ (նկ. 38,ա): Եթե $\angle AOB$-ն




$\smile ALB=180^0$
ա)




$\smile ALB=\angle AOB$
բ)




$\smile ALB=360^0-\angle AOB$
գ)

Նկ. 38

չփռված է, ապա ասում են, որ այդ անկյան ներսում ընկած *AB* աղեղը *փոքր է կիսաշրջանագծից:* 38,բ նկարում այդ աղեղը նշագծված է հաստ գծով: *A* և *B* ծայրերով մյուս աղեղի մասին ասում են, որ այն *մեծ է կիսաշրջանագծից* (աղեղ *ALB*-ն՝ 38,գ նկարում):

Շրջանագծի աղեղը կարելի է չափել աստիճաններով: *Եթե O կենտրոնով շրջանագծի AB աղեղը փոքր է կիսաշրջանագծից կամ կիսաշրջանագիծ է, ապա համարվում է, որ նրա աստիճանային չափը հավասար է AOB կենտրոնային անկյան աստիճանային չափին* (տե՛ս նկ. 38,ա,բ): *Իսկ եթե AB աղեղը մեծ է կիսաշրջանագծից, ապա համարվում է, որ նրա աստիճանային չափը հավասար է $360^0-\angle AOB$* (տե՛ս նկ. 38,գ):

Այստեղից հետևում է, *որ շրջանագծի՝ ընդհանուր ծայրեր ունեցող երկու աղեղների աստիճանային չափերի գումարը $360^0$ է:*

Ինչպես *AB* աղեղի (*ALB* աղեղի) աստիճանային չափը, այնպես էլ *AB* աղեղը (*ALB* աղեղը) նշանակվում են նույն $\smile AB$ ($\smile ALB$) պայմանանշանով:

Նկար 39-ում *CAB* աղեղի աստիճանային չափը հավասար է $145^0$:




Նկ. 39




Նկ. 40

Սովորաբար, համառոտ ասում են. «$CAB$ աղեղը հավասար է $145^0$», կամ պարզապես՝ «$CAB$ աղեղը $145^0$ է», և գրում են. $\cup CAB=145^0$: Այդ նույն նկարում $\cup ADB=360^0-115^0=245^0$, $\cup CDB=360^0-145^0=215^0$, $\cup DB=180^0$:

**23 Թեորեմ ներգծյալ անկյան մասին:** *Այն անկյունը, որի գագաթը գտնվում է շրջանագծի վրա, իսկ կողմերը հատում են այդ շրջանագիծը, կոչվում է ներգծյալ անկյուն:*

Նկար 40-ում $ABC$ անկյունը ներգծյալ է: $AMC$ աղեղն ընկած է այդ անկյան ներսում: Այդպիսի դեպքերում ասում են, որ $ABC$ ներգծյալ անկյունը *հենվում է* $AMC$ աղեղի վրա: Ապացուցենք թեորեմ ներգծյալ անկյան մասին:

Թ ե ո ր ե մ : *Ներգծյալ անկյունը չափվում է այն աղեղի կեսով, որի վրա նա հենվում է:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիցուք՝ $\angle ABC$-ն $O$ կենտրոնով շրջանագծի ներգծյալ անկյուն է, որը հենվում է $AC$ աղեղի վրա (նկ. 41): Ապացուցենք, որ $\angle ABC=\frac{1}{2}\cup AC$: Դիտարկենք $BO$ ճառագայթի՝ $ABC$ անկյան նկատմամբ դասավորության հնարավոր երեք դեպք:

1)*$BO$ ճառագայթը համընկնում է $ABC$ եռանկյան կողմերից մեկին*, օրինակ՝ $BC$ կողմին (նկ. 41,ա): Այս դեպքում $AC$ աղեղը փոքր է կիսաշրջանագծից, ուրեմն՝ $\angle AOC=\cup AC$: Քանի որ $AOC$ անկյունը $AOB$ հավասարասրուն եռանկյան արտաքին անկյուն է, ապա $\angle AOC=\angle 1+\angle 2$: Բայց անկյուններ 1-ը և 2-ը հավասարասրուն եռանկյան հիմքին առընթեր անկյուններ են և, ուրեմն, հավասար են.




Նկ. 41



Նկ. 42



Նկ. 43

$\angle 1=\angle 2$: Այսպիսով՝ $\angle AOC=\angle 1+\angle 2=2\cdot\angle 1$, որտեղից հետևում է, որ $2\cdot\angle 1=\cup AC$ կամ՝ $\angle ABC=\angle 1=\frac{1}{2}\cup AC$:

2)*BO ճառագայթը ABC անկյունը տրոհում է երկու անկյան:* Այս դեպքում *BO* ճառագայթը ինչ որ *D* կետում հատում է *AC* աղեղը (նկ. 41,բ): *D* կետը տրոհում է *AC* աղեղը երկու աղեղի՝ $\cup AD$-ի և $\cup DC$-ի: Ըստ ապացուցված 1-ին դեպքի՝ $\angle ABD=\frac{1}{2}\cup AD$ և $\angle DBC=\frac{1}{2}\cup DC$: Այս հավասարությունները անդամ առ անդամ գումարելով՝ ստացվում է.

$\angle ABD+\angle DBC=\frac{1}{2}\cup AD+\frac{1}{2}\cup DC$, կամ՝ $\angle ABC=\frac{1}{2}\cup AC$:

3)*BD ճառագայթը չի տրոհում ACB անկյունը երկու անկյան և չի համընկնում այդ անկյան որևէ կողմին*: Այս դեպքի համար ապացուցումը կատարեք ինքնուրույն (օգտվեք 41,գ նկարից):

Հետևանք 1: *Միևնույն աղեղին հենված ներգծյալ անկյունները հավասար են* (նկ. 42):

Հետևանք 2: *Կիսաշրջանագծին հենված ներգծյալ անկյունը ուղիղ է* (նկ. 43):



## Խնդիրներ

**153.** Գծագրեք *O* կենտրոնով շրջանագիծ և նրա վրա նշեք *A* կետը: *AB* լարը կառուցեք այնպես, որ. **ա)**$\angle AOB=60^0$, **բ)**$\angle AOB=90^0$, **գ)**$\angle AOB=120^0$, **դ)**$\angle AOB=180^0$:

**154.** *O* կենտրոնով շրջանագծի շառավիղը 16սմ է: Գտեք *AB* լարը, եթե. **ա)**$\angle AOB=60^0$, **բ)**$\angle AOB=180^0$:

**155.** $O$ կենտրոնով շրջանագծի $AB$ և $CD$ լարերը հավասար են:
**ա)**Ապացուցեք, որ $A$ և $B$ ծայրերով երկու աղեղները համապատասխանաբար հավասար են $C$ և $D$ ծայրերով երկու աղեղներին,
**բ)**գտեք $C$ և $D$ ծայրերով աղեղները, եթե $\angle AOB=112^0$:

**156.** $AB$ կիսաշրջանագծի վրա վերցված են $C$ և $D$ կետերը այնպես, որ $\cup AC=57^0$, $\cup BD=63^0$: Գտեք $CD$ լարը, եթե շրջանագծի շառավիղը 12սմ է:

**157.** Գտեք $ABC$ ներգծյալ անկյունը, եթե $AC$ աղեղը, որի վրա այն հենվում է, հավասար է. **ա)**$48^0$, **բ)**$57^0$, **գ)**$90^0$, **դ)**$124^0$, **ե)**$180^0$:

**158.** Ըստ նկար 44-ի տվյալների՝ գտեք $x$-ը:




Նկ. 44

**159.** $AOB$ կենտրոնային անկյունը $30^0$-ով մեծ է $AB$ աղեղին հենված ներգծյալ անկյունից: Գտեք այդ անկյուններից յուրաքանչյուրը:

**160.** $AB$ լարը ձգում է $115^0$-ի հավասար աղեղ, իսկ $AC$ լարը՝ $43^0$-ի աղեղ: Գտեք $BAC$ անկյունը:

**161.** Շրջանագիծը $A$ և $B$ կետերով տրոհվում է երկու աղեղի, որոնց աստիճանային չափերը հարաբերում են, ինչպես 6:4: Գտեք այդ աղեղների աստիճանային չափերը:

**162.** $A$ և $B$ կետերը շրջանագիծը տրոհում են երկու աղեղի, որոնցից փոքրը $140^0$ է, իսկ մեծը $M$ կետով տրոհված է 6:5 հարաբերությամբ՝ հաշված $A$ կետից: Գտեք $BAM$ անկյունը:

**163.** $A$, $B$ և $C$ կետերը գտնվում են $O$ կենտրոնով շրջանագծի վրա: Գտեք $ABC$ անկյունը, եթե $\angle AOC=146^0$, իսկ $B$ և $O$ կետերը գտնվում են $AC$ ուղղի միևնույն կողմում:

**164.** $A$, $B$ և $C$ կետերը գտնվում են $O$ կենտրոնով շրջանագծի վրա: Գտեք $ABC$ անկյունը, եթե $\angle AOC=164^0$, իսկ $B$ և $O$ կետերը գտնվում են $AC$ ուղղի տարբեր կողմերում:

**165.** $O$ կենտրոնով շրջանագծի $AB$ աղեղը $90^0$ է: Գտեք $O$ կետի հեռավորությունը $AB$ լարից, եթե $AB$=24սմ:

**166.** $O$ կենտրոնով շրջանագծի $AB$ աղեղը $120^0$ է: Գտեք $O$ կետի հեռավորությունը $AB$ լարից, եթե շրջանագծի շառավիղը 20սմ է:

**167.** $AB$-ն և $AC$-ն շրջանագծի լարեր են: $\angle BAC=70^0$, $\cup AB=120^0$: Գտեք $AC$ աղեղի աստիճանային չափը:

**168.** Շրջանագծում տարված են $AB$ տրամագիծը և $AC$ լարը: Գտեք $BAC$ անկյունը, եթե $AC$ և $CB$ աղեղների աստիճանային չափերը հարաբերում են, ինչպես 7:2:

**169.** Շրջանագծի $AB$ և $CD$ լարերը հատվում են $E$ կետում: Գտեք $BEC$ անկյունը, եթե $\cup AD=54^0$, $\cup BC=70^0$:

**170.** $AB$-ն շրջանագծի տրամագիծն է: Շրջանագծի վրա վերցված է $C$ կետն այնպես, որ $BC$ լարը հավասար է շրջանագծի շառավիղին: Գտեք $ABC$ եռանկյան անկյունները:

**171.** $A$ կետով տարված են շրջանագծին $AB$ շոշափողը ($B$-ն շոշափման կետն է) և $AD$ հատողը, որն անցնում է նաև $O$ կենտրոնով ($D$-ն շրջանագծի կետ է, ընդ որում՝ $O$-ն գտնվում է $A$ և $D$ կետերի միջև): Գտեք $\angle BAD$-ն և $\angle ADB$-ն, եթե $\cup BD=110^0 20$ :

**172.** Ապացուցեք, որ շրջանագծի՝ զուգահեռ լարերի միջև առնված աղեղների աստիճանային չափերը հավասար են:

**173.** Շրջանից դուրս վերցված կետից այդ շրջանագծին տարված են երկու հատող, որոնց կազմած անկյունը $32^0$ է: Շրջանագծի՝ այդ անկյան կողմերի միջև առնված աղեղներից մեծը հավասար է $100^0$: Գտեք փոքր աղեղը:

**174.** Գտեք շրջանից դուրս վերցված կետից այդ շրջանագծին տարված երկու հատողներով կազմված սուր անկյունը, եթե շրջանագծի՝ հատողների միջև առնված աղեղները հավասար են $140^0$ և $52^0$:

**175.** $AC$ հատվածը շրջանագծի տրամագիծ է, $AB$-ն՝ լար, $MA$-ն՝ շոշափող, և $MAB$ անկյունը սուր է: Ապացուցեք, որ $\angle MAB=\angle ACB$:

**176.** $AM$ ուղիղը շրջանագծի շոշափող է, իսկ $AB$-ն՝ այդ շրջանագծի լար: Ապացուցեք, որ $MAB$ անկյունը չափվում է $MAB$ անկյան ներսում առնված $AB$ աղեղի կեսով:

**177.** $ABC$ եռանկյան գագաթները գտնվում են շրջանագծի վրա: Ապացուցեք, որ եթե $AB$-ն շրջանագծի տրամագիծ է, ապա $\angle C>\angle A$ և $\angle C>\angle B$:

**178.** Տրված են մի հատված և մի անկյուն: Կառուցեք շրջանագիծն այնպես, որ այդ հատվածը լինի նրա այն լարը, որի ծգած աղեղի աստիճանային չափը հավասար է տրված անկյանը:

**179.** *Կառուցեք տրված շրջանագծի շոշափողը, որն անցնում է այդ շրջանից դուրս տրված կետով:*

Լ ո ւ ծ ո ւ մ : Դիցուք՝ տրված են $O$ կենտրոնով շրջանագիծը և շրջանից դուրս գտնվող $A$ կետը: Ենթադրենք, որ խնդիրը լուծ-




Նկ. 45

ված է, և $AB$-ն որոնելի շոշափողն է (նկ. 45): Քանի որ $AB$ ուղիղը ուղղահայաց է $OB$ շառավիղին, ապա խնդրի լուծումը հանգում է շրջանագծի այն $B$ կետի կառուցմանը, որի համար $\angle ABO$-ն ուղիղ է: Այդ կետը կարելի է կառուցել հետևյալ կերպ. տանում ենք $OA$ հատվածը և որոշում նրա $O_1$ միջնակետը: Այնուհետև կառուցում ենք $O_1$ կենտրոնով և $O_1A$ շառավիղով շրջանագիծը: Այդ շրջանագիծը տրված շրջանագծի հետ հատվում է երկու՝ $B$ և $B_1$ կետերում: $AB$-ն և $A_1B_1$-ը որոնելի շոշափողներն են, քանի որ $AB \perp OB$ և $AB_1 \perp OB_1$: Իսկապես՝ $ABO$ և $AB_1O$ անկյուններից յուրաքանչյուրը $O_1$ կենտրոնով շրջանագծի ներգծյալ անկյուն է, որը հենվում է կիսաշրջանագծի վրա: Ակներև է, որ խնդիրն ունի երկու լուծում:

## § 4 ԵՌԱՆԿՅԱՆ ՉՈՐՍ ՆՇԱՆԱՎՈՐ ԿԵՏԵՐԸ

**24 Անկյան կիսորդի և հատվածի միջնուղղահայացի հատկությունները:** Ապացուցենք թեորեմ անկյան կիսորդի մասին:

Թեորեմ: *Չփռված անկյան կիսորդի յուրաքանչյուր կետ հավասարահեռ է անկյան կողմերից*[1]*: Հակադարձը՝ անկյան ներսում գտնվող և նրա կողմերից հավասարահեռ յուրաքանչյուր կետ գտնվում է այդ անկյան կիսորդի վրա:*

Ապացուցում: 1)$BAC$ անկյան կիսորդի վրա վերցնենք կամայական $M$ կետ, տանենք $AB$ և $AC$ ուղիղներին ուղղահայացներ՝ $MK$-ն և $ML$-ը: Ապացուցենք, որ $MK=ML$ (նկ. 46):

[1] Այսինքն՝ հավասարահեռ է անկյան կողմերն ընդգրկող ուղիղներից:

Դիտարկենք $AMK$ և $AML$ ուղղանկյուն եռանկյունները: Այդ եռանկյունները, ըստ ներքնաձիգի և սուր անկյան, հավասար են ($AM$-ը ընդհանուր ներքնաձիգ է, $\angle 1 = \angle 2$ ըստ պայմանի): Հետևաբար՝ $MK=ML$:



Նկ. 46

2) Դիցուք՝ $M$ կետը գտնվում է $BAC$ անկյան ներսում և հավասարահեռ է $AB$ և $AC$ կողմերից: Ապացուցենք, որ $AM$ ճառագայթը $BAC$ անկյան կիսորդն է (նկ. 46):

Տանենք $AB$ և $AC$ ուղիղներին ուղղահայացներ՝ $MK$-ն և $ML$-ը: $AKM$ և $ALM$ ուղղանկյուն եռանկյունների $AM$ ներքնաձիգը ընդհանուր է, իսկ $MK$ և $ML$ էջերը, ըստ պայմանի, հավասար են: Ուրեմն՝ այդ եռանկյունները հավասար են, հետևաբար՝ $\angle 1 = \angle 2$: Իսկ դա նշանակում է, որ $AM$ ճառագայթը $BAC$ անկյան կիսորդն է: Թեորեմն ապացուցված է:

Հ ե տ և ա ն ք : *Եռանկյան կիսորդները հատվում են մի կետում:*

Իրոք, $O$ տառով նշանակենք $ABC$ եռանկյան $AA_1$ և $BB_1$ կիսորդների հատման կետը և այդ կետից տանենք $OK$, $OL$ և $OM$ ուղղահայացները համապատասխանաբար $AB$, $BC$ և $CA$ ուղիղներին (նկ. 47): Ըստ անկյան կիսորդի հատկության՝ $OK=OM$ և $OK=OL$: Հետևաբար՝ $OM=OL$,



Նկ. 47

ինչը նշանակում է, որ $O$ կետը հավասարահեռ է $ABC$ եռանկյան $CA$ և $CB$ կողմերից: Ուրեմն՝ այդ կետը գտնվում է $CC_1$ կիսորդի վրա: Հետևաբար՝ $ABC$ եռանկյան երեք կիսորդն էլ հատվում են նույն $O$ կետում, ինչը և պահանջվում էր ապացուցել:

Ինչպես գիտենք, *հատվածի միջնուղղահայաց* կոչվում է այն ուղիղը, որն անցնում է հատվածի միջնակետով և ուղղահայաց է նրան: Նկար 48-ում պատկերված $a$ ուղիղը $AB$ հատվածի միջնուղղահայացն է: Յուրաքանչյուր հատվածի միջնուղղահայացը միակն է:




Նկ. 48







Նկ. 49

Մենք արդեն գիտենք հատվածի միջնուղղահայացի հատկությունը (տե ս 17-րդ կետը), ըստ որի՝ հատվածի միջնուղղահայացի յուրաքանչյուր կետ հավասարապես է հեռացված այդ հատվածի ծայրակետերից (տե ս նկ. 49): Ճշմարիտ է նաև հակադարձը. յուրաքանչյուր կետ, որ հավասարահեռ է հատվածի ծայրակետերից, գտնվում է այդ հատվածի միջնուղղահայացի վրա:

Օգտվելով հատվածի միջնուղղահայացի հատկությունից՝ կարող ենք կատարել մի կարևոր եզրակացություն. *եռանկյան կողմերի միջնուղղահայացները հատվում են մի կետում:*

Իրոք, $O$ տառով նշանակենք $ABC$ եռանկյան $AB$ և $BC$ կողմերի $m$ և $n$ միջնուղղահայացների հատման կետը (նկ. 50. քանի որ $AB$ և $BC$ ուղիղները հատվում են, ուրեմն հատվում են նաև $m$-ը և $n$-ը): Ըստ հատվածի միջնուղղահայացի հատկության՝ $OB=OA$ և $OB=OC$: Ուրեմն՝ $OA=OC$, ինչը նշանակում է, որ $O$-ն հավասարապես է հեռացված $AC$ հատվածի ծայրակետերից: Հետևաբար՝ այն գտնվում է այդ հատվածի միջնուղղահայացի՝ $p$-ի վրա: Այսպիսով՝ $ABC$ եռանկյան կողմերի բոլոր երեք՝ $m$, $n$ և $p$ միջնուղղահայացները հատվում են միևնույն $O$ կետում:




Նկ. 50




Նկ. 51

**(25) Թեորեմ եռանկյան բարձրությունների հատման կետի մասին:** Մենք ապացուցել ենք, որ եռանկյան կողմերի միջնուղղահայացները հատվում են մի կետում: Մի կետում են հատվում նաև կիսորդները: Պարզվում է, որ նույնպիսի հատկություն ունեն նաև եռանկյան բարձրությունները:

Թ ե ո ր ե մ : *Եռանկյան բարձրությունները (կամ նրանց շարունակությունները) հատվում են մի կետում:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիտարկենք կամայական $ABC$ եռանկյուն և ապացուցենք, որ նրա բարձրություններն ընդգրկող $AA_1$, $BB_1$ և $CC_1$ ուղիղները հատվում են մի կետում (նկ. 51):

$ABC$ եռանկյան յուրաքանչյուր գագաթից տանենք հանդիպակաց կողմին զուգահեռ ուղիղ: Ստացվում է $A_2B_2C_2$ եռանկյունը: $A$, $B$ և $C$ կետերը ստացված եռանկյան կողմերի միջնակետերն են: Իսկապես, $AB=A_2C$ և $AB=CB_2$, որպես $ABA_2C$ և $ABCB_2$ զուգահեռագծերի հանդիպակաց կողմեր: Ուստի՝ $A_2C=CB_2$: Նույն ձևով՝ $C_2A=AB_2$ և $C_2B=BA_2$: Բացի այդ, ինչպես հետևում է կառուցումից, $CC_1 \perp A_2B_2$, $AA_1 \perp B_2C_2$ և $BB_1 \perp A_2C_2$: Այսպիսով՝ $AA_1$, $BB_1$ և $CC_1$ ուղիղները $A_2B_2C_2$ եռանկյան կողմերի միջնուղղահայացներն են: Հետևաբար՝ դրանք հատվում են մի կետում: Թեորեմն ապացուցված է:

**(26) Եռանկյան միջնագծերի հատման կետը:** Պարզվում է, որ եռանկյան միջնագծերը օժտված են բացառիկ հատկությամբ: Այդ հատկությանը հանգամանորեն կանդրադառնանք հետագայում, այստեղ նշենք, որ *յուրաքանչյուր եռանկյան երեք միջնագիծը հատվում են մի կետում:*



Նկ. 52

Դիցուք՝ $ABC$ եռանկյան մեջ $AA_1$ և $CC_1$ միջնագծերը հատվում են $M$ կետում (նկ. 52): Ապացուցենք, որ այդ $M$ կետով անցնող $BB_1$ հատվածը եռանկյան երրորդ միջնագիծն է: Դրա համար նախ ցույց տանք, որ $BB_1$ հատվածը $ABC$ եռանկյան $C_1A_1$ միջին գիծը հատում է նրա $F$ միջնակետում, այսինքն՝ ապացուցենք, որ $C_1F=FA_1$: $AB$ կողմի $C_1$ միջնակետով տանենք $AA_1$-ին զուգահեռ $C_1E$ հատվածը: Ըստ Թալեսի թեորեմի՝ $BE=EM$: Դրանից հետևում է, որ $EA_1 \parallel MC$ ($BCM$ եռանկյան մեջ $EA_1$-ը միջին գիծ է): Ստացվեց, որ $C_1EA_1M$ քառանկյան հան-

դիպակաց կողմերը զույգ առ զույգ զուգահեռ են և, ուրեմն, այն զուգահեռագիծ է: Քանի որ $F$ կետը այդ զուգահեռագծի անկյունագծերի հատման կետն է, ապա $C_1F=FA_1$: Այժմ, դիտարկենք $ABB_1$ և $CBB_1$ եռանկյունները, որոնց մեջ $C_1F$-ը և $A_1F$-ը, համապատասխանաբար, միջին գիծ են: Ստանում ենք. $AB_1=2C_1F=2FA_1=B_1C$, այսինքն՝ $AB_1=B_1C$: Այսպիսով՝ $M$ կետով անցնող $BB_1$ հատվածը, իրոք, համընկնում է $ABC$ եռանկյան $B$ գագաթով անցնող միջնագծի հետ: Հետևաբար՝ $M$ կետում հատվում են այդ եռանկյան բոլոր միջնագծերը:

Ամփոփենք ստացված փաստերը: Յուրաքանչյուր եռանկյան հետ առնչվում են չորս կետ. միջնագծերի հատման կետը, կիսորդների հատման կետը, կողմերի միջնուղղահայացների հատման կետը և բարձրությունների (կամ նրանց շարունակությունների) հատման կետը: Այս չորս կետերը կոչվում են *եռանկյան նշանավոր կետեր:*



## Խնդիրներ

**180.** Չփռված $O$ անկյան կիսորդի $M$ կետից տարված են այդ անկյան կողմերին ուղղահայացներ՝ $MA$-ն և $MB$-ն: Ապացուցեք, որ $AB \perp OM$:

**181.** $O$ անկյան կողմերը շոշափում են երկու այն շրջանագծերից յուրաքանչյուրին, որոնք $A$ կետում ունեն ընդհանուր շոշափող: Ապացուցեք, որ այդ շրջանագծերի կենտրոնները գտնվում են $OA$ ուղղի վրա:

**182.** $A$ անկյան կողմերը շոշափում են $O$ կենտրոնով և 5սմ շառավիղով շրջանագիծը: Գտեք $AO$-ն, եթե $\angle A=60^0$:

**183.** $ABC$ եռանկյան $B$ և $C$ գագաթներին հարակից արտաքին անկյունների կիսորդները հատվում են $O$ կետում: Ապացուցեք, որ $O$ կետը կենտրոն է մի շրջանագծի, որին շոշափում են $AB$, $BC$ և $AC$ ուղիղները:

**184.** $ABC$ եռանկյան $AA_1$ և $BB_1$ կիսորդները հատվում են $M$ կետում: Գտեք $ACM$ և $BCM$ անկյունները, եթե. **ա)** $\angle AMB=136^0$, **բ)** $\angle AMB=111^0$:

**185.** $ABC$ եռանկյան $BC$ կողմի միջնուղղահայացը $D$ կետում հատում է $AC$ կողմը: Գտեք. **ա)** $AD$-ն և $CD$-ն, եթե $BD$=5սմ, $AC$=8,5սմ, **բ)** $AC$-ն, եթե $BD$=11,4սմ, $AD$=3,2սմ:

**186.** $ABC$ եռանկյան $AB$ և $AC$ կողմերի միջնուղղահայացները հատում են $BC$ կողմը $D$ կետում: Ապացուցեք, որ. **ա)** $D$-ն $BC$ կողմի միջնակետն է, **բ)** $\angle A=\angle B+\angle C$:

**187.** $ABC$ հավասարասրուն եռանկյան $AB$ կողմի միջնուղղահայացը $BC$ կողմը հատում է $E$ կետում: Գտեք եռանկյան $AC$ հիմքը, եթե $AEC$ եռանկյան պարագիծը 27սմ է, իսկ $AB$=18սմ:

**188.** $ABC$ և $ABD$ հավասարասրուն եռանկյուններն ունեն ընդհանուր հիմք՝ $AB$-ն: Ապացուցեք, որ $CD$ ուղիղն անցնում է $AB$ հատվածի միջնակետով:

**189.** Ապացուցեք, որ եթե $ABC$ եռանկյան $AB$ և $AC$ կողմերը հավասար չեն, ապա եռանկյան $AM$ միջնագիծը բարձրություն չէ:

**190.** $ABC$ հավասարասրուն եռանկյան $AB$ հիմքին առընթեր անկյունների կիսորդները հատվում են $M$ կետում: Ապացուցեք, որ $CM$ և $AB$ ուղիղները փոխուղղահայաց են:

**191.** $ABC$ հավասարասրուն եռանկյան սրունքներին տարված $AA_1$ և $BB_1$ բարձրությունները հատվում են $M$ կետում: Ապացուցեք, որ $MC$ ուղիղը $AB$ հատվածի միջնուղղահայացն է:

**192.** Կառուցեք տրված հատվածի միջնուղղահայացը:

Լուծում: Դիցուք՝ $AB$-ն տրված հատվածն է: Կառուցենք $AB$ շառավիղով երկու շրջանագիծ, որոնց կենտրոններն են $A$ և $B$ կետերը (նկ. 53): Այդ շրջանագծերը հատվում են երկու՝ $M_1$ և $M_2$ կետերում: $AM_1$, $AM_2$, $BM_1$ և $BM_2$ հատվածները իրար հավասար են՝ որպես այդ շրջանագծերի շառավիղներ:

Տանենք $M_1M_2$ ուղիղը: Նկատի ունենանք, որ $M_1$ և $M_2$ կետերը հավասարահեռ են $AB$ հատվածի ծայրակետերից: Ուստի՝ դրանք գտնվում են $AB$ հատվածի միջնուղղահայացի վրա: Հետևաբար՝ $M_1M_2$ ուղիղը $AB$ հատվածի որոնելի միջնուղղահայացն է:



Նկ. 53

**193.** Տրված են $a$ ուղիղը և նրա միևնույն կողմում գտնվող $A$, $B$ կետերը: $a$ ուղղի վրա կառուցեք այնպիսի $M$ կետ, որը հավասարահեռ է $A$ և $B$ կետերից:

**194.** Տրված են մի անկյուն և մի հատված: Անկյան ներսում կառուցեք այն կետը, որը հավասարահեռ է տվյալ անկյան կողմերից և տրված հատվածի ծայրակետերից:

**195.** Կառուցեք այն եռանկյունը, որի կողմերի միջնակետերը տրված են:

## § 5 ՆԵՐԳԾՅԱԼ ԵՎ ԱՐՏԱԳԾՅԱԼ ՇՐՋԱՆԱԳԾԵՐ

**27 Ներգծյալ շրջանագիծ:** Եթե բազմանկյան բոլոր կողմերը շոշափում են շրջանագիծը, ապա շրջանագիծը կոչվում է այդ բազմանկյանը *ներգծյալ*, իսկ բազմանկյունը՝ այդ շրջանագծին *արտագծյալ*: Նկար 54-ում $EFMN$ քառանկյունը արտագծված է $O$ կենտրոնով շրջանագծին, մինչդեռ $DKMN$ քառանկյունը այդ շրջանագծին արտագծյալ չէ, քանի որ $DK$ կողմը շրջանագիծը չի շոշափում: Նկար 55-ում $ABC$ եռանկյունը արտագծված է $O$ կենտրոնով շրջանագծին:

Ապացուցենք թեորեմ եռանկյանը ներգծյալ շրջանագծի մասին:

Թ ե ո ր ե մ : *Յանկացած եռանկյանը կարելի է ներգծել շրջանագիծ:*

Ա պ ա ց ո ւ ց ո ւ մ : Դիտենք կամայական $ABC$ եռանկյուն և $O$ տառով նշանակենք նրա կիսորդների հատման կետը: $O$ կետից տանենք $OK$, $OL$ և $OM$ ուղղահայացները համապատասխանաբար $AB$, $BC$ և $CA$ կողմերին (տե ս նկ. 55): Քանի որ $O$ կետը հավասարապես է հեռացված $ABC$ եռանկյան կողմերից, ապա $OK=OL=OM$: Ուստի՝ $O$ կենտրոնով և $OK$ շառավիղով շրջանագիծն անցնում է $K$, $L$ և $M$ կետերով: $ABC$ եռանկյան կողմերը $K$, $L$, $M$ կետերում շոշափում են այդ շրջանագիծը, քանի որ դրանք ուղղահայաց են $OK$, $OL$ և $OM$ շառավիղներին: Ուրեմն՝ $O$ կենտրոնով և $OK$ շառավիղով շրջանագիծը $ABC$ եռանկյանը ներգծյալ է: Թեորեմն ապացուցված է:



Նկ. 54



Նկ. 55

Պ ա ր զ ա բ ա ն ու մ . 1) Նշենք, որ *եռանկյանը կարելի է ներգծել միայն մեկ շրջանագիծ:* Իրոք, ենթադրենք, թե եռանկյանը կարելի է ներգծել երկու շրջանագիծ: Այդ դեպքում շրջանագծերից յուրաքանչյուրի կենտրոնը հավասարապես է հեռացված եռանկյան կողմերից և, ուրեմն, համընկնում է եռանկյան կիսորդների հատման *O* կետի հետ: Յուրաքանչյուրի շառավիղը հավասար է *O* կետի՝ եռանկյան կողմերից ունեցած հեռավորությանը: Հետևաբար՝ այդ շրջանագծերը համընկնում են:

2) Ի տարբերություն եռանկյունների, որոնց բոլորին կարելի է շրջանագիծ ներգծել, քառանկյուններից ոչ բոլորին է հնարավոր ներգծել շրջանագիծ: Դիտարկենք, օրինակ, ուղղանկյուն, որի կից կողմերը անհավասար են, այսինքն այն քառակուսի չէ: Ակներև է, որ այդպիսի ուղղանկյան մեջ հնարավոր է «տեղավորել» միայն նրա երեք կողմը շոշափող շրջանագիծ (նկ. 56,ա), բայց միաժամանակ չորս կողմը շոշափող շրջանագիծ «տեղավորելն» անհնար է: Այլ խոսքով՝ անհնար է այդպիսի ուղղանկյանը ներգծել շրջանագիծ: Եթե քառանկյանը կարելի է շրջանագիծ ներգծել, ապա նրա կողմերն ունեն մի կարևոր հատկություն: Այն է. *ցանկացած արտագծյալ քառանկյան հանդիպակաց կողմերի գումարները հավասար են:*

Այս հատկությունը հեշտ է բացահայտվում, եթե, օգտվելով 56,բ նկարից, շոշափողների միմյանց հավասար հատվածները նշանակենք նույն տառով: Իրոք, $AB+CD=a+b+c+d$, $BC+AD=a+b+c+d$, ուստի՝ $AB+CD=BC+AD$:

Պարզվում է, որ ճշմարիտ է նաև հակադարձ պնդումը, այն է. *եթե ուռուցիկ քառանկյան հանդիպակաց կողմերի գումարները հավասար են, ապա նրան կարելի է ներգծել շրջանագիծ* (տե՛ս խնդիր 256-ը):



ա)




բ)

Նկ. 56




Նկ. 57

**28 Արտագծյալ շրջանագիծ:** Եթե բազմանկյան բոլոր գագաթները գտնվում են շրջանագծի վրա, ապա շրջանագիծը կոչվում է այդ բազմանկյանը *արտագծյալ*, իսկ բազմանկյունը՝ այդ շրջանագծին *ներգծյալ*: Նկար 57-ում $ABCD$ քառանկյունը ներգծված է $O$ կենտրոնով շրջանագծին, մինչդեռ $AECD$ քառանկյունը այդ շրջանագծին ներգծյալ չէ, քանի որ նրա $E$ գագաթը շրջանագծի վրա չի գտնվում: Նկար 58-ում $ABC$ եռանկյունը ներգծված է $O$ կենտրոնով շրջանագծին:



Նկ. 58

Ապացուցենք թեորեմ եռանկյան արտագծյալ շրջանագծի մասին:

Թ ե ո ր ե մ : *Յանկացած եռանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ:*

Ա պ ա ց ու ց ու մ : Այս թեորեմի ապացուցումը մենք, փաստորեն, կատարել ենք (տե՛ս 19 կետը): Դիտարկենք կամայական $ABC$ եռանկյուն: Նրա $A$, $B$ և $C$ գագաթները չեն գտնվում մի ուղղի վրա: Ըստ երեք կետով շրջանագծի որոշման՝ այդ $A$, $B$ և $C$ կետերով կարելի է տանել շրջանագիծ, ընդ որում՝ միայն մեկը: Հետևաբար՝ $ABC$ եռանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ, և այն միակն է: եռանկյանը արտագծյալ շրջանագծի կենտրոնը նրա կողմերի միջնուղղահայացների հատման կետն է, որը հավասարահեռ է եռանկյան գագաթներից: Նրա շառավիղը հավասար է այդ կետի՝ եռանկյան որևէ գագաթից ունեցած հեռավորությանը: Իսկ եռանկյան գագաթներից հավասարահեռ կետը համընկնում է նրա կողմերի միջնուղղահայացների հատման կետին: Թեորեմն ապացուցված է:

Պ ա ր զ ա բ ա ն ու մ : Ի տարբերություն եռանկյունների, որոնց բոլորին կարելի է շրջանագիծ արտագծել, քառանկյուններից ոչ բոլորին է հնարավոր արտագծել շրջանագիծ:
Օրինակ, շեղանկյանը շրջանագիծ արտագծել հնարավոր չէ, եթե, իհարկե, շեղանկյունը քառակուսի չէ (բացատրեք ինքնուրույն):

Եթե քառանկյանը կարելի է շրջանագիծ արտագծել, ապա նրա անկյուններն ունեն մի կարևոր հատկություն: Այն է. *ցանկացած ներգծյալ քառանկյան հանդիպակաց անկյունների գումարը* $180^0$ *է:*



Նկ. 59

Այս հատկությունը հեշտ է ապացուցվում, եթե, օգտվելով 59 նկարից, կիրառենք ներգծյալ անկյունների մասին թեորեմը: Իրոք, $\angle A=\frac{1}{2}\cup BCD$, $\angle C=\frac{1}{2}\cup BAD$, հետևաբար՝

$$\angle A+\angle C=\frac{1}{2}(\cup BCD+\cup BAD)=\frac{1}{2}\cdot 360^0=180^0.$$

Պարզվում է, որ ճշմարիտ է նաև հակադարձ պնդումը, այն է. *եթե քառանկյան հանդիպակաց անկյունների գումարը $180^0$ է, ապա քառանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ* (տե՛ս խնդիր 260-ը):



## Խնդիրներ

**196.** Ապացուցեք, որ հավասարակողմ եռանկյան ներգծյալ և արտագծյալ շրջանագծերի կենտրոնները համընկնում են:

**197.** Հավասարակողմ եռանկյան ներգծյալ շրջանագծի շառավիղը $r$ է: Ապացուցեք, որ այդ եռանկյան արտագծյալ շրջանագծի շառավիղը $2r$ է:

**198.** Եռանկյան ներգծյալ և արտագծյալ շրջանագծերի կենտրոնները համընկնում են: Կարո՞ղ է, արդյոք, այդ եռանկյունը հավասարակողմ չլինել: Պատասխանը հիմնավորեք:

**199.** Ներգծյալ շրջանագծի շոշափման կետում հավասարասրուն եռանկյան սրունքը տրոհվում է 3սմ և 4սմ երկարությամբ հատվածների՝ հաշված հիմքից: Գտեք այդ եռանկյան պարագիծը:

**200.** Գտեք 6սմ և 8սմ էջերով և 10սմ ներքնաձիգով ուղղանկյուն եռանկյանը ներգծած շրջանագծի շառավիղը (տե՛ս հաջորդ համարի խնդիրը):

**201.** Ապացուցեք, որ $a$ և $b$ էջեր և $c$ ներքնաձիգ ունեցող ուղղանկյուն եռանկյանը ներգծած շրջանագծի շառավիղը հավասար է $\frac{1}{2}(a+b-c)$:



Նկ. 60

Լուծում: Դիցուք՝ $ABC$-ն $C$ ուղիղ անկյունով ուղղանկյուն եռանկյուն է, $O$-ն ներգծյալ շրջանագծի կենտրոնն է, իսկ $M$-ը, $N$-ը և $K$-ն շոշափման կետերն են (նկ. 60): Նկատենք, որ $ONCK$-ն քառակուսի է, որի կողմը հավասար է որոնելի $r$

շառավիղին: Յուրաքանչյուր անկյան գագաթը հավասարապես է հեռացված իր կողմերի և շրջանագծի շոշափման կետերից: Այսպիսով, $CK=CN=r$, $BN=BM=a-r$, $AK=AM=b-r$: Մյուս կողմից՝ $AB=AM+MB$, այսինքն՝ $b-r+a-r=c$: Լուծելով ստացված հավասարումը $r$ անհայտի նկատմամբ՝ ստանում ենք. $r=\frac{1}{2}(a+b-c)$:

**202.** Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգը 13սմ է, իսկ էջերի գումարը՝ 17սմ: Գտեք եռանկյան ներգծյալ շրջանագծի շառավիղը:

**203.** Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգը 15սմ է, իսկ պարագիծը՝ 36սմ: Գտեք այդ եռանկյան ներգծյալ շրջանագծի շառավիղը:

**204.** $O$-ն $ABC$ եռանկյան ներգծյալ շրջանագծի կենտրոնն է: Գտեք $\angle AOC$-ն, եթե $\angle ABC=80^0$:

**205.** $ABC$ եռանկյան մեջ $\angle C=120^0$, $AC=BC=a$: Գտեք այդ եռանկյան արտագծյալ շրջանագծի շառավիղը:

**206.** Շրջանագծին արտագծած հավասարասրուն սեղանի հիմքերը հավասար են 2սմ և 8սմ: Գտեք սեղանի պարագիծը:

**207.** Շրջանագծին արտագծած հավասարասրուն սեղանի հիմքերից մեկը հավասար է մյուսի եռապատիկին, իսկ սեղանի սրունքը 8սմ է: Գտեք սեղանի պարագիծը:

**208.** Գտեք շրջանագծին արտագծած հավասարասրուն սեղանի կողմերը, եթե նրա պարագիծը 40սմ է, իսկ հիմքերից մեկը 4 անգամ փոքր է մյուսից:

**209.** Հավասարասրուն սեղանին ներգծած է շրջանագիծ: Այդ սեղանի պարագիծը 60սմ է: Գտեք նրա սրունքը:

**210.** Հավասարասրուն սեղանի սրունքը 8սմ է, իսկ փոքր հիմքին առընթեր անկյունների գումարը՝ $300^0$: Գտեք այդ սեղանին ներգծած շրջանագծի շառավիղը:

**211.** Ապացուցեք, որ եթե զուգահեռագծին կարելի է ներգծել շրջանագիծ, ապա այդ զուգահեռագիծը շեղանկյուն է:

**212.** Ապացուցեք, որ ցանկացած շեղանկյանը կարելի է ներգծել շրջանագիծ:

**213.** Գծագրեք երեք եռանկյուն՝ սուրանկյուն, բութանկյուն և ուղղանկյուն: Դրանց յուրաքանչյուրի համար կառուցեք արտագծյալ շրջանագիծ:

**214.** Շրջանագծին ներգծած է $ABC$ եռանկյունն այնպես, որ $AB$-ն տրամագիծ է: Գտեք եռանկյան անկյունները, եթե. **ա)** $\cup BC=134^0$, **բ)** $\cup AC=70^0$:

**215.** Շրջանագծին ներգծված է $BC$ հիմքով $ABC$ հավասարասրուն եռանկյունը: Գտեք եռանկյան անկյունները, եթե $\cup BC=102^0$:

**216.** Ուղղանկյուն եռանկյանը արտագծված է շրջանագիծ: Ապացուցեք, որ նրա կենտրոնը ներքնաձիգի միջնակետն է:

**217.** $ABC$ եռանկյանը արտագծված է շրջանագիծ: Գտեք այդ շրջանագծի շառավիղը, եթե $AC=24$սմ, $\angle A=60^0$, $\angle B=30^0$:

**218.** Ապացուցեք, որ կարելի է շրջանագիծ արտագծել. **ա)** ցանկացած ուղղանկյանը, **բ)** ցանկացած հավասարասրուն սեղանին:

**219.** Ապացուցեք, որ եթե սեղանին կարելի է արտագծել շրջանագիծ, ապա սեղանը հավասարասրուն է:

**220.** Շրջանագծին ներգծած է $ABCD$ քառանկյունը, որի մեջ $\angle A=104^0$ և $\angle B=71^0$: Գտեք անկյուններ $C$-ն և $D$-ն:

**221.** Արդյոք կարելի՞ է տրված $ABCD$ քառանկյանը արտագծել շրջանագիծ, եթե. **ա)** $\angle A=64^0$, $\angle B=95^0$, $\angle C=106^0$, **բ)** $\angle A=72^0$, $\angle B=69^0$, $\angle D=111^0$, **գ)** $\angle A=90^0$, $\angle C=90^0$, $\angle D=80^0$, **դ)** $\angle A=2\alpha$, $\angle B=5\alpha$, $\angle C=7\alpha$, $\angle D=4\alpha$:

## ԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

**(29) Երկու շրջանագծերի փոխադարձ դասավորությունը:** Հարթության վրա պատկերված երկու շրջանագծերի փոխադարձ դասավորությունը կախված է նրանց շառավիղներից և կենտրոնների հեռավորությունից: Դիտարկենք հնարավոր դեպքերը:

ա) *Երկու շրջանագծեր կարող են լինել համակենտրոն*, այսինքն՝ նրանց կենտրոնները համընկնում են, բայց շառավիղները հավասար չեն (նկ. 61): Այդ շրջանագծերից փոքր շառավիղ ունեցողն ընկած է մեծ շառավիղով շրջանի մեջ: Դրանցից երկրորդի շառավիղը ($OB$-ն) առաջին շրջանագծի հետ ունի ընդհանուր կետ ($C$-ն), իսկ շրջանագծերը ընդհանուր կետ չունեն:

բ) *Երկու շրջանագծեր կարող են լինել հատվող*, այսինքն՝ ունենալ երկու ընդհանուր կետ (նկ. 62): Այդպիսի դասավորությամբ շրջանագծերի կենտրոնները, բնականաբար, չեն համընկնում, ընդ որում՝ *կենտրոնների հեռավորությունը փոքր է շառավիղների գումարից:* Իրոք, եթե $A$-ն շրջանագծերի հատման կետ է, ապա, ըստ եռանկյան անհավասարության՝ $O_1A+O_2A>O_1O_2$: Այս դեպքում կարևոր է մեկ այլ փաստ ևս. *շրջանագծերի կենտրոններով անցնող $O_1O_2$ ուղիղը այդ շրջանագծերի հատման կետերը միացնող $AB$ հատվածի միջնուղղահայացն է* (հիմնավորեք ինքներդ):

**216.** Ուղղանկյուն եռանկյանը արտագծված է շրջանագիծ: Ապացուցեք, որ նրա կենտրոնը ներքնաձիգի միջնակետն է:

**217.** $ABC$ եռանկյանը արտագծված է շրջանագիծ: Գտեք այդ շրջանագծի շառավիղը, եթե $AC$=24սմ, $\angle A=60^0$, $\angle B=30^0$:

**218.** Ապացուցեք, որ կարելի է շրջանագիծ արտագծել. **ա)** ցանկացած ուղղանկյանը, **բ)** ցանկացած հավասարասրուն սեղանին:

**219.** Ապացուցեք, որ եթե սեղանին կարելի է արտագծել շրջանագիծ, ապա սեղանը հավասարասրուն է:

**220.** Շրջանագծին ներգծած է $ABCD$ քառանկյունը, որի մեջ $\angle A=104^0$ և $\angle B=71^0$: Գտեք անկյուններ $C$-ն և $D$-ն:

**221.** Արդյոք կարելի՞ է տրված $ABCD$ քառանկյանը արտագծել շրջանագիծ, եթե. **ա)** $\angle A=64^0$, $\angle B=95^0$, $\angle C=106^0$, **բ)** $\angle A=72^0$, $\angle B=69^0$, $\angle D=111^0$, **գ)** $\angle A=90^0$, $\angle C=90^0$, $\angle D=80^0$, **դ)** $\angle A=2\alpha$, $\angle B=5\alpha$, $\angle C=7\alpha$, $\angle D=4\alpha$:

## ԿԱՌՈՒՑՄԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

**(29) Երկու շրջանագծերի փոխադարձ դասավորությունը:** Հարթության վրա պատկերված երկու շրջանագծերի փոխադարձ դասավորությունը կախված է նրանց շառավիղներից և կենտրոնների հեռավորությունից: Դիտարկենք հնարավոր դեպքերը:

ա) *Երկու շրջանագծեր կարող են լինել համակենտրոն,* այսինքն՝ նրանց կենտրոնները համընկնում են, բայց շառավիղները հավասար չեն (նկ. 61): Այդ շրջանագծերից փոքր շառավիղ ունեցողն ընկած է մեծ շառավիղով շրջանի մեջ: Դրանցից երկրորդի շառավիղը ($OB$-ն) առաջին շրջանագծի հետ ունի ընդհանուր կետ ($C$-ն), իսկ շրջանագծերը ընդհանուր կետ չունեն:

բ) *Երկու շրջանագծեր կարող են լինել հատվող,* այսինքն՝ ունենալ երկու ընդհանուր կետ (նկ. 62): Այդպիսի դասավորությամբ շրջանագծերի կենտրոնները, բնականաբար, չեն համընկնում, ընդ որում՝ *կենտրոնների հեռավորությունը փոքր է շառավիղների գումարից:* Իրոք, եթե $A$-ն շրջանագծերի հատման կետ է, ապա, ըստ եռանկյան անհավասարության՝ $O_1A+O_2A>O_1O_2$: Այս դեպքում կարևոր է մեկ այլ փաստ ևս. *շրջանագծերի կենտրոններով անցնող $O_1O_2$ ուղիղը այդ շրջանագծերի հատման կետերը միացնող $AB$ հատվածի միջնուղղահայացն է* (հիմնավորեք ինքներդ):




Նկ. 61




Նկ. 62

գ) *Երկու շրջանագծեր կարող են ունենալ ընդհանուր մեկ կետ* (նկ. 63): Այսպիսի դասավորության համար հնարավոր է երկու դեպք: 63,ա նկարում պատկերված են $O_1$ և $O_2$ կենտրոններով երկու շրջանագիծ, որոնք ունեն $A$ ընդհանուր կետը: Այս դեպքում շրջանագծերի կենտրոնների հեռավորությունը հավասար է նրանց շառավիղների գումարին. $O_1O_2=O_1A+AO_2$: Եթե այս հավասարությունը տեղի չունենար, ապա կամ $O_1O_2$-ը պետք է մեծ լիներ շառավիղների գումարից, կամ՝ փոքր: Առաջին դեպքում դրանից կհետևեր, որ շրջանագծերն ընդհանուր կետ ունենալ չեն կարող: Երկրորդ դեպքում կհետևեր, որ $A$ կետի՝ $O_1O_2$ ուղղի նկատմամբ համաչափ կետը ևս կգտնվեր շրջանագծի վրա, իսկ դա կնշանակեր, որ այդ շրջանագծերն ունեն երկու ընդհանուր կետեր:

63,բ նկարում պատկերված են $A$ ընդհանուր կետ ունեցող երկու՝ $O_1$ և $O_2$ կենտրոններով շրջանագծերի դասավորության մեկ այլ դիրք: Այս դեպքում շրջանագծերի կենտրոնների $O_1O_2$ հեռավորությունը հավասար է $O_1A$ և $O_2A$ շառավիղների տարբերությանը:




$O_1O_2 = R + r$

ա)




$O_1O_2 = R - r$

բ)

Նկ. 63

Եթե երկու շրջանագծեր ունեն մեկ ընդհանուր կետ, ապա այդ կետում շառավիղներին տարված ուղղահայացները համընկնում են: Ուրեմն՝ ընդհանուր կետում այդ շրջանագծերն ունեն ընդհանուր շոշափող: Նման դեպքերում ասում են նաև, որ *շրջանագծերն իրար շոշափում են*, ընդ որում՝ նկար 63,ա-ի դեպքում ասում են՝ *շոշափում դրսից* (կամ՝ *արտաքին շոշափում*), իսկ նկար 63,բ-ի դեպքում՝ *շոշափում ներսից* (կամ՝ *ներքին շոշափում*): Դրսից շոշափման դեպքում շրջանագծերի կենտրոնները ընկած են նրանց ընդհանուր շոշափողի տարբեր կողմերում, իսկ ներսից շոշափման դեպքում՝ միևնույն կողմում:

դ) *Երկու շրջանագծեր կարող են ընդհանուր կետ չունենալ* (նկ. 64):




Նկ. 64

Այսպիսի դասավորության համար նույնպես հնարավոր է երկու դեպք: 64,ա նկարում $O_1$ և $O_2$ կենտրոններով շրջանագծերը չունեն ընդհանուր կետ. նրանց կենտրոնների հեռավորությունը մեծ է շառավիղների գումարից. $O_1O_2>O_1A+O_2B$:

64,բ նկարում $O_1$ և $O_2$ կենտրոններով շրջանագծերը նույնպես չունեն ընդհանուր կետ. նրանց կենտրոնների հեռավորությունը փոքր է, քան շառավիղներից մեծը: Ավելին, այս դեպքում շրջանագծերի կենտրոնների հեռավորությունը ավելի փոքր է, քան մեծ և փոքր շառավիղների տարբերությունը (փորձեք հիմնավորել ինքնուրույն):

**30** * **Կետերի երկրաչափական տեղը**: Այժմ նկարագրենք կառուցման խնդիրներ լուծելու մի նոր եղանակ: Այն լայնորեն կիրառվում է այնպիսի խնդիրներ լուծելիս, որոնցում հարկավոր է գտնել կետեր, որոնք բավարարում են երկու կամ ավելի պայմանների: Այդ եղանակը նկարագրենք հետևյալ օրինակով:

Խ ն դ ի ր ։ *Կառուցել եռանկյունը՝ ըստ տրված կողմի, դրան իջեցրած բարձրության և հանդիպակաց անկյան։*

Լ ու ծ ու մ ։ Դիցուք՝ տրված են երկու հատված՝ $a$-ն և $h$-ը, և մի անկյուն՝ α-ն։ $a$ երկարությամբ հատվածը որոնելի եռանկյան կողմերից մեկն է, $h$-ը՝ այդ կողմին տարած բարձրությունը, իսկ α-ն հավասար է $a$ կողմի հանդիպակաց անկյանը։

Որևէ դիրքով կառուցենք $a$ հատվածը՝ որպես եռանկյան $BC$ կողմ։ Ուրեմն՝ որոնելի եռանկյան $B$ և $C$ գագաթները հայտնի են, մնում է գտնել $A$ գագաթի տեղը։ Դրա համար խնդիրը մասնատենք երկու խնդրի՝ յուրաքանչյուր դեպքում նկատի առնելով մյուս երկու պայմաններից մեկը։

Որոնելի եռանկյունը $h$ բարձրություն ունենալու համար՝ նրա $a$ կողմի հանդիպակաց $A$ գագաթը գտնվելու է այդ կողմից $h$ հեռավորության վրա։ Այդպիսի գագաթ կարող են լինել բազմաթիվ կետեր, որոնք կազմում են կետերի երկրաչափական տեղ[2]. այն ներկայացնում է $BC$-ին զուգահեռ՝ նրանից $h$ հեռավորություն ունեցող ուղիղ (զուգահեռ ուղիղները երկուսն են, բայց կարելի է բավարարվել դրանցից մեկով)։

Այժմ «աչքաթող» անենք խնդրի՝ բարձրությանը վերաբերող տվյալը և դիտենք միայն մյուս տվյալը, որը վերաբերում է հանդիպակաց անկյանը։

α մեծությամբ $A$ անկյունը կարելի է դիտել որպես մի ներգծյալ անկյուն, որը հենվում է $B$ և $C$ ծայրերով աղեղի վրա, ընդ որում՝ $\cup BC=2\alpha$։ Բայց այդ աղեղի վրա հենված ներգծյալ անկյունը ոչ թե մեկն է, այլ դրանց գագաթները կազմում են կետերի երկրաչափական տեղ, որը ներկայացնում է շրջանագծի աղեղ։ Նկատենք, որ այդ շրջանագծի կենտրոնը կարելի է որոշել՝ կառուցելով $BC$ հիմքով հավասարասրուն եռանկյուն, որի սրունքների կազմած անկյունը հավասար է 2α (այդ սրունքները կլինեն շառավիղներ)։

---

[2] *Կետերի երկրաչափական տեղ* (կամ՝ *կետերի բազմություն*) կոչվում է այն պատկերը, որը բաղկացած է այն բոլոր կետերից, որոնք օժտված են որոշակի հատկությամբ։

Այսպիսով՝ որոնելի $ABC$ եռանկյան $A$ գագաթը միաժամանակ գտնվելու է կետերի երկրաչափական տեղերից թե մեկի, և թե մյուսի վրա: Այսինքն՝ $A$ գագաթը գտնվելու է ինչպես $a$-ին զուգահեռ տարված ուղղի, այնպես էլ կառուցված շրջանագծի վրա: Այդ ուղղի և շրջանագծի հատման կետն էլ կլինի եռանկյան $A$ գագաթը: Եթե ուղիղը և շրջանագիծը ունեն երկու հատման կետ, ապա գոյություն ունի խնդրի պայմաններին բավարարող երկու լուծում: Իսկ եթե դրանք հատման կետ չունեն, ապա խնդիրը լուծում չունի:

Այսպիսով՝ *կետերի երկրաչափական տեղերը գտնելու եղանակով խնդիրներ լուծելու համար անհրաժեշտ է նախ՝ կառուցել խնդրի տվյալներին պայմաններին բավարարող կետերի երկրաչափական տեղերը, իսկ ապա՝ որոշել դրանց ընդհանուր կետերը:* Լուծման այս եղանակը դուք արդեն կիրառել եք բազմաթիվ խնդիրներ լուծելիս, ինչպես օրինակ՝ տրված երեք կողմով եռանկյունը կառուցելիս: Այնուհետ, կարկինին տալով կողմի երկարությանը հավասար բացվածք, շրջանագծի աղեղ կառուցելիս, փաստորեն, գտնում եք եռանկյան գագաթ հանդիսացող կետերի երկրաչափական տեղը:



Խնդիրներ

**222.** Տրված են երկու՝ $A$ և $B$ կետեր: Գտեք այն $C$ կետերի երկրաչափական տեղը, որոնց համար $AC \perp CB$:

**223.** Գտեք այն կետերի երկրաչափական տեղը, որոնք հավասարահեռ են երկու հատվող շրջանագծերի ընդհանուր կետերից:

**224.** Տրված է $O$ կետը $a$ ուղղի վրա: Գտեք այն կետերի երկրաչափական տեղը, որոնց $a$ ուղղից ունեցած հեռավորությունը երկու անգամ փոքր է $O$ կետից ունեցած հեռավորությունից:

**225.** Կառուցեք արտաքին շոշափում ունեցող երկու շրջանագիծ: Երրորդ շրջանագիծը կառուցեք այնպես, որ այն հատի և առաջին, և երկրորդ շրջանագծերը, և բոլոր շրջանագծերի կենտրոնները գտնվեն մի ուղղի վրա:

**226.** Կառուցեք շրջանագիծը, եթե տրված են նրա լարը և այդ լարի ծայրակետերով աղեղներից մեկի աստիճանային չափը:

**227.** Կառուցեք շրջանագիծը, եթե տրված են երկու կետ, որոնք այդ շրջանագծին արտագծած շեղանկյան հանդիպակաց կողմերի շոշափման կետերն են:

228. Կառուցեք շրջանագիծը, եթե տրված են երկու կետ, որոնք այդ շրջանագծին արտագծած քառակուսու կից կողմերի շոշափման կետերն են:

229. Կառուցեք եռանկյունը՝ նրա տրված մի կողմով և այդ կողմին տարված միջնագծով ու բարձրությունով:

230. Կառուցեք եռանկյունը՝ նրա տրված մի կողմով, նրա հանդիպակաց անկյունով և այդ կողմին տարված միջնագծով:

## § 6 ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄ ԳԼԱՆԻ, ԿՈՆԻ ԵՎ ԳՆԴԻ ՄԱՍԻՆ

**31 Պատկերացում գլանի մասին:** Ծանոթանանք տարածական այնպիսի մարմինների, որոնց մեջ շրջանագիծը նրա մաս է և ունի կարևոր դեր: Մեր շրջակայքում և տեխնիկայում հաճախ հանդիպող այդպիսի մարմին է գլանը: Գլանի տեսք ունեն, օրինակ, խողովակները: Յուրաքանչյուր գլան մակերևույթում ունի երկու շրջան, որոնց շառավիղները հավասար են (նկ. 65): Կարելի է գլան ստանալ հետևյալ կերպ: Վերցնենք որևէ ուղղանկյուն, օրինակ, $AA_1O_1O$ ուղղանկյունը և այն պտտենք $OO_1$ կողմի շուրջ: Ընդունենք, որ այդ ընթացքում *ուղղանկյան անկյունները և կողմերի երկարությունները չեն փոխվում:* Այդ պտտումից առաջանում է տարածական մի մարմին, որը կոչվում է գլան (այն կոչվում է նաև ուղիղ շրջանային գլան): Շրջանների $O$ և $O_1$ կենտրոններով անցնող ուղիղը կոչվում է *գլանի առանցք:* $OA$ և $O_1A_1$ հատվածները պտտելիս գծում են $O$ և $O_1$ կենտրոններով շրջաններ, որոնք կոչվում են գլանի *հիմքեր*, իսկ դրանց շառավիղները՝ գլանի *շառավիղներ:* Գլանի առանցքն




Նկ. 65

ընդգրկող հարթությունը գլանի հետ ունի ընդհանուր մաս, որը կոչվում է *առանցքային հատույթ*: Գլանի առանցքային հատույթը ուղղանկյուն է, որի հանդիպակաց կողմերից երկուսը շրջանագծերի տրամագծեր են: Այդպիսի ուղղանկյան տրամագիծ չհանդիսացող կողմերը կոչվում են գլանի *ծնորդներ*: Նկար 65-ում պատկերված գլանի ծնորդներ են $AA_1$, $BB_1$, $CC_1$, $DD_1$ հատվածները:

*Գլանի ծնորդները միմյանց հավասար են:*

Իրոք, քանի որ $AA_1=OO_1$, $CC_1=OO_1$ (որպես ուղղանկյունների հանդիպակաց կողմեր), ապա $AA_1=CC_1$: Այսպիսով՝ գլանի ծնորդները հավասար են նրա հիմքերի շրջանների կենտրոնների հեռավորությանը և, ուրեմն, միմյանց հավասար են:

Գլանը որոշելու համար կարևոր է իմանալ նրա հիմքերի շրջանների շառավիղը և կենտրոնների հեռավորությունը (կամ՝ ծնորդի երկարությունը):

## 32 Պատկերացում կոնի մասին:

Մենք գիտենք, որ եթե ուղղանկյունը պտտում ենք կողմերից մեկի շուրջ, առաջանում է գլան: Այժմ պատկերացնենք մի մարմին, որն առաջանում է ուղղանկյուն եռանկյունն իր էջերից մեկի շուրջ պտտելիս: Այդ ձևով ստացված մարմինը կոչվում է *կոն*: Նկար 66-ում պատկերված է մի կոն, որն ստացվում է, երբ $AOM$ ուղղանկյուն եռանկյունը պտտվում է $MO$ էջի շուրջը: Պտտման ընթացքում $OA$ էջը առաջացնում է շրջան, որի կենտրոնը $O$ կետն է: $O$ կենտրոնով և $OA$ շառավիղով շրջանը կոչվում է այդ *կոնի հիմք*, իսկ M կետը՝ *կոնի գագաթ*: Կոնի գագաթը հիմքի շրջանագծի կետերին միացնող հատվածները ($MA$-ն, $MA_1$-ը, $MA_2$-ը և այլն) կոչվում են կոնի *ծնորդներ*:

Նկատենք, որ պտտման ընթացքում $AOM$ եռանկյան անկյունները



Նկ. 66


Նկ. 67

և կողմերի երկարությունները չեն փոխվում: Դրանից հետևում է, որ *կոնի բոլոր ծնորդներն իրար հավասար են:*

Կոնի գագաթով և հիմքի կենտրոնով անցնող ուղիղը (*MO* ուղիղը նկ. 66-ում) կոչվում է *կոնի առանցք*: Կոնի առանցքը պարունակող հարթության և կոնի ընդհանուր մասը եռանկյուն է. այն կոչվում է *առանցքային հատույթ* (նկ. 67-ում առանցքային հատույթը ստվերագծված է): Այդ եռանկյան կողմերից երկուսը կոնի ծնորդներն են և, ուրեմն, հավասար են, իսկ երրորդ կողմը հիմքի տրամագիծն է:

Այսպիսով՝ կոնի առանցքային հատույթը հավասարասրուն եռանկյուն է, ընդ որում՝ առանցքով տարված բոլոր հատույթներն իրար հավասար են:

**33 Պատկերացում գնդի մասին:** Մեր շրջակայքում հաճախակի հանդիպող տարածական մարմին է գունդը: Գունդը սահմանափակված է գնդային մակերևույթով (*գնդոլորտով*): Գնդային մակերևույթ կոչվում է տարածական այն պատկերը, որը կազմված է տարածության բոլոր այն կետերից, որոնք տրված կետից ունեն տրված հեռավորությունը (նկ. 68,ա): Այդ կետը կոչվում է գնդի *կենտրոն*, իսկ կենտրոնը մակերևույթի որևէ կետին միացնող հատվածը՝ *շառավիղ*: 68,բ նկարում *O* կենտրոնով գնդի շառավիղներ են *OA*, *OB*, *OC*, *OD* հատվածները: Գնդային մակերևույթի երկու կետերը միացնող հատվածը, որն անցնում է նրա կենտրոնով, կոչվում է *տրամագիծ*: Տրամագիծը հավասար է երկու շառավղի: Գնդային մակերևույթ կարելի է ստանալ պտտման միջոցով: Դրա համար անհրաժեշտ է կիսաշրջանագիծը պտտել տրամագծի շուրջ (նկ. 68,բ): Իսկ եթե տրամագծի շուրջ պտտենք կիսաշրջանը, ապա կառաջանա գունդ:



ա)



բ)

Նկ. 68

Գնդի կենտրոնը պարունակող հարթության և գնդային մակերևույթի ընդհանուր մասը կազմված է տվյալ հարթության բոլոր այն կետերից, որոնք հավասարահեռ են կենտրոնից: Այն ներկայացնում է շրջանագիծ: Պարզվում է, որ գնդային մակերևույթի երկու կետ պարունակող հարթության և այդ մակերևույթի ընդհանուր մասը ևս շրջանագիծ է: Դրանցից մեծագույն շառավիղ ունեցողները այն շրջանագծերն են, որոնց կենտրոնը համընկնում է գնդի կենտրոնին:

Գունդը որոշելու համար կարևոր է իմանալ նրա շառավիղը, իսկ որոշ դեպքերում՝ նաև կենտրոնի տեղը: Գնդաձև մարմիններ հաճախ են հանդիպում ոչ միայն մեր շրջակայքում և տեխնիկայում, այլև տիեզերքում: Երկնակամարում դուք ամեն օր տեսնում եք այդպիսի մարմիններ, որոնցից ամենապայծառ երևացողներն են Արեգակը և Լուսինը: Հիշենք, որ Երկիրը ևս գնդաձև է, որի համար էլ նրան հաճախ անվանում են նաև երկրագունդ: Երկրագնդի մեծ շրջանագծի շառավիղը մոտավորապես հավասար է 12800կմ: Իսկ որպես մեծ շրջանագիծ է ծառայում նրա *հասարակածը*, ինչը ձեզ ծանոթ է աշխարհագրությունից: Մեծ շրջանագծեր են նաև նրա *միջօրեականները*, որոնք ներկայացնում են որպես երկրագնդի կենտրոնով անցնող հարթության և գնդոլորտի հատումից առաջացած պատկերներ:

Ինչ վերաբերում է *զուգահեռականներին*, դրանք ևս շրջանագծեր են, սակայն ունեն համեմատաբար ավելի փոքր շառավիղներ:



## Հարցեր և խնդիրներ

**231.** Գլանի առանցքային հատույթը քառակուսի է: Գտեք գլանի ծնորդի և շառավիղի երկարությունների հարաբերությունը:

**232.** Գլանի առանցքային հատույթը 40սմ պարագծով մի ուղղանկյուն է, որի անկյունագծերը փոխուղղահայաց են: Գտեք գլանի շառավիղը:

**233.** Գլանի առանցքային հատույթը մի ուղղանկյուն է, որի անկյունագիծը ծնորդ հանդիսացող կողմի հետ կազմում է $60^0$-ի անկյուն: Գտեք այդ անկյունագիծը, եթե գլանի ծնորդի երկարությունը 6սմ է:

**234.** Գլանաձև բաժակը կիսով չափ լցված է հյութով: Հյութը դատարկվելուց հետո նրա մակերևույթի հետքը մնացել էր բաժակի պատերին: Երկրաչափական ի՞նչ պատկեր է այդ հետքը: Համեմատեցեք այդ պատկերը բաժակում եղած այլ պատկերների հետ:

**235.** Գլանաձև ցիստերնի մի մասը լցված է հեղուկով: Ի՞նչ պատկեր է հեղուկի մակերևույթը: Դիտարկեք ցիստերնի տեղադրման երկու դեպք՝ ուղղաձիգ և հորիզոնական:

**236.** $30^0$ անկյուն ունեցող ուղղանկյուն եռանկյունը պտտվում է մեծ էջի շուրջ: Գտեք պտտումից առաջացած կոնի ծնորդը, եթե այդ կոնի շառավիղը 15սմ է:

**237.** Կոնի առանցքային հատույթը 12սմ կողմով հավասարակողմ եռանկյուն է: Որոշեք այդ կոնի շառավիղն ու ծնորդը:

**238.** Կոնի առանցքային հատույթը հավասարասրուն ուղղանկյուն եռանկյուն է, որի ներքնաձիգը 20սմ է: Գտեք այդ կոնի շառավիղը:

**239.** Նկարագրեք այն մարմինը, որն առաջանում է ուղղանկյուն եռանկյունը ներքնաձիգի շուրջ պտտելիս:

**240.** Նկարագրեք այն մարմինը, որն առաջանում է, երբ ուղղանկյուն սեղանը պտտում ենք. **ա)**մեծ հիմքի շուրջ, **բ)**փոքր հիմքի շուրջ:

**241.** Գնդաձև ակվարիումի մի մասը լցված է ջրով: Ի՞նչ պատկեր է ջրի մակերևույթը: Ո՞ր դեպքում ձկները կունենան մակերևույթին մոտ լողալու ավելի երկար ճանապարհ:

**242.** Գտեք այն գնդային մակերևույթի մեծ շրջանագծի շառավիղը, որն ստացվում է 12սմ տրամագծով կիսաշրջանագիծը այդ տրամագծի շուրջ պտտելիս:

**243.** Ի՞նչ կարող եք ասել 7սմ տրամագծով երկու գնդային մակերևույթի փոխադարձ դասավորության մասին, եթե նրանց կենտրոնների հեռավորությունը. **ա)**հավասար է 8սմ, **բ)**հավասար է 4սմ, **գ)**հավասար է 7սմ, **դ)**փոքր է 7սմ-ից, **ե)**մեծ է 9սմ-ից:

Ծանոթություն. երկու գնդային մակերևույթի փոխադարձ դասավորությունը կարող է լինել. 1)ընդհանուր կետ չունեն, 2)ունեն միայն մեկ ընդհանուր կետ, 3)ունեն ընդհանուր կետեր:

**244.** Գնդային մակերևույթի մեծ շրջանագծի վրա երեք կետեր նշված են այնպես, որ այդ շրջանագիծը բաժանված է երեք հավասար աղեղների: Ապացուցեք, որ այդ կետերը հավասարակողմ եռանկյան գագաթներ են:

## ԳԼՈՒԽ VII-Ի ԿՐԿՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

1. Պարզաբանեք երկու կետերով անցնող շրջանագիծը որոշելու հարցը:
2. Ինչպե՞ս է որոշվում շրջանագիծն իր երեք կետերով:
3. Հետազոտեք ուղղի և շրջանագծի փոխադարձ դասավորությունը՝ համեմատելով շրջանագծի շառավիղը և կենտրոնից մինչև ուղիղը եղած հեռավորությունը: Ձևակերպեք ստացված արդյունքը:
4. Ո՞ր ուղիղն է կոչվում շրջանագծին հատող:
5. Ո՞ր ուղիղն է կոչվում շրջանագծի շոշափող: Ո՞ր կետն է կոչվում շրջանագծի և ուղղի շոշափման կետ:

6. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ շոշափողի հատկության մասին:
7. Ապացուցեք, որ մի կետից շրջանագծին տարված շոշափողի հատվածները հավասար են, և դրանք կազմում են հավասար անկյուններ այն ուղղի հետ, որն անցնում է այդ կետով ու շրջանագծի կենտրոնով:
8. Ձևակերպեք և ապացուցեք շոշափողի հատկության մասին թեորեմի հակադարձ թեորեմը:
9. Պարզաբանեք, թե տրված շրջանագծի վրա տրված կետով ինչպես տանել շոշափող այդ շրջանագծին:
10. Ո՞ր անկյունն է կոչվում շրջանագծի կենտրոնային անկյուն:
11. Պարզաբանեք, թե որ աղեղն է կոչվում կիսաշրջանագիծ: Ո՞ր աղեղն է կիսաշրջանագծից փոքր, և ո՞րը՝ կիսաշրջանագծից մեծ:
12. Ինչպե՞ս է որոշվում աղեղի աստիճանային չափը: Ինչպե՞ս է այն նշանակվում:
13. Ո՞ր անկյունն է կոչվում ներգծյալ: Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ ներգծյալ անկյան մասին:
14. Ապացուցեք, որ միևնույն աղեղի վրա հենված ներգծյալ անկյունները հավասար են:
15. Ապացուցեք, որ կիսաշրջանագծի վրա հենված ներգծյալ անկյունը ուղիղ է:
16. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ անկյան կիսորդի մասին:
17. Ապացուցեք, որ եռանկյան կիսորդները հատվում են մի կետում:
18. Ո՞ր հատվածն է կոչվում հատվածի միջնուղղահայաց: Վերհիշեք հատվածի միջնուղղահայացի հատկությունը:
19. Ապացուցեք, որ եռանկյան կողմերի միջնուղղահայացները հատվում են մի կետում:
20. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ եռանկյան բարձրությունների հատման մասին:
21. Ձևակերպեք եռանկյան միջնագծերի հատման կետի մասին պնդումը:
22. Ո՞ր շրջանագիծն է կոչվում բազմանկյանը ներգծյալ: Ո՞ր բազմանկյունն է կոչվում շրջանագծին արտագծված:
23. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ եռանկյանը ներգծյալ շրջանագծի մասին: Քանի՞ շրջանագիծ է կարելի ներգծել տրված եռանկյանը:
24. Ի՞նչ հատկություն ունեն շրջանագծին արտագծված քառանկյան կողմերը:
25. Ո՞ր շրջանագիծն է կոչվում բազմանկյանը արտագծյալ: Ո՞ր բազմանկյունն է կոչվում շրջանագծին ներգծած:
26. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ եռանկյան արտագծյալ շրջանագծի մասին: Քանի՞ շրջանագիծ է հնարավոր արտագծել եռանկյանը:
27. Ի՞նչ հատկություն ունեն շրջանագծին ներգծած քառանկյան անկյունները:

28. Պարզաբանեք երկու շրջանագծի փոխադարձ դասավորությունը՝ կախված նրանց շառավիղներից և կենտրոնների հեռավորությունից:

29. Նկարագրեք, թե ինչպես կարելի է ստանալ գլան: Ի՞նչ է գլանի առանցքային հատույթը:

30. Նկարագրեք, թե ինչպես կարելի է ստանալ կոն: Ի՞նչ է կոնի առանցքային հատույթը:

31. Ի՞նչ է գնդային մակերևույթը: Ինչպե՞ս կարելի է ստանալ գնդային մակերևույթ: Ի՞նչ են մեծ շրջանագծերը:

## Լրացուցիչ խնդիրներ

**245.** Ապացուցեք, որ շրջանագծի՝ տրամագիծ չհանդիսացող լարի ծայրակետերով տարված շոշափողները հատվում են:

**246.** $AB$ և $AC$ ուղիղները $B$ և $C$ կետերում շոշափում են $O$ կենտրոնով շրջանագիծը: $BC$ աղեղի կամայական $X$ կետով տարված է այդ շրջանագծին շոշափող, որը $M$ և $N$ կետերում հատում է $AB$ և $AC$ հատվածները: Ապացուցեք, որ $AMN$ եռանկյան պարագիծը և $MON$ անկյան մեծությունը կախված չեն $BC$ աղեղի վրա $X$ կետի ընտրությունից:

**247*.** Երկու շրջանագծեր ունեն ընդհանուր կետ՝ $M$-ը, և այդ կետում ընդհանուր շոշափող: $AB$ ուղիղը շոշափում է շրջանագծերից մեկը $A$ կետում, իսկ մյուսը՝ $B$ կետում: Ապացուցեք, որ $M$ կետը գտնվում է $AB$ տրամագծով շրջանագծի վրա:

**248.** Շրջանագծի $AA_1$ տրամագիծը ուղղահայաց է $BB_1$ լարին: Ապացուցեք, որ կիսաշրջանագծից փոքր $AB$ և $AB_1$ աղեղների աստիճանային չափերը հավասար են:

**249.** $A$, $B$, $C$ և $D$ կետերը գտնվում են շրջանագծի վրա: Ապացուցեք, որ եթե $\cup AB=\cup CD$, ապա $AB=CD$:

**250.** $AB$ հատվածը շրջանագծի տրամագիծ է, իսկ $BC$ և $AD$ լարերը զուգահեռ են: Ապացուցեք, որ $CD$ լարը տրամագիծ է:

**251.** Ըստ նկար 69-ի տվյալների՝ ապացուցեք, որ

$$\angle AMB=\frac{1}{2}(\cup CLD+\cup AKB):$$



Նկ. 69

Լուծում: Տանենք $BC$ լարը: Քանի որ $\angle AMB$-ն $BMC$ եռանկյան արտաքին անկյուն է, ապա $\angle AMB=\angle 1+\angle 2$: Ըստ ներգծյալ անկյան մասին թեորեմի՝ $\angle 1=\frac{1}{2}\cup CLD$, $\angle 2=\frac{1}{2}\cup AKB$:

Հետևաբար՝ $\angle AMB=\frac{1}{2}(\cup CLD+\cup AKB)$:

**252.** Շրջանից դուրս վերցրած կետով տարված են այդ շրջանագծի երկու հատող: Ապացուցեք, որ դրանց կազմած անկյունը չափվում է այն աղեղների աստիճանային չափերի տարբերությամբ, որոնք առնված են հատողների միջև:

**253.** Կարո՞ղ է, արդյոք, տարակողմ եռանկյան գագաթը գտնվել եռանկյան կողմերից մեկի միջնուղղահայացի վրա: Պատասխանը հիմնավորեք:

**254.** Ապացուցեք, որ եթե ուղղանկյանը կարելի է շրջանագիծ ներգծել, ապա այն քառակուսի է:

**255.** Ապացուցեք, որ եթե սեղանի հիմքերն ընդգրկող ուղիղները շոշափում են շրջանագիծը, և շոշափման կետերը գտնվում են հիմքերի վրա, ապա սեղանի միջին գիծն անցնում է շրջանագծի կենտրոնով:

**256.** Ապացուցեք, որ եթե ուռուցիկ քառանկյան հանդիպակաց կողմերի գումարները հավասար են, ապա այդ քառանկյանը կարելի է ներգծել շրջանագիծ:

Լ ո ւ ծ ո ւ մ : Դիցուք՝ $ABCD$ ուռուցիկ քառանկյան մեջ

$$AB+CD=BC+AD \qquad (1)$$

$A$ և $B$ անկյունների կիսորդների հատման $O$ կետը հավասարապես է հեռացված $AD$, $AB$ և $BC$ կողմերից: Ուրեմն $O$ կենտրոնով կարելի է տանել շրջանագիծ, որին շոշափում են այդ երեք կողմերը (նկ. 70,ա): Ապացուցենք, որ $CD$ կողմը ևս շոշափում է այդ շրջանագիծը, և դա կնշանակի, որ տվյալ շրջանագիծը քառանկյանը ներգծյալ է:

Ենթադրենք հակառակը. $CD$ ուղիղը կա՛մ ընդհանուր կետ չունի շրջանագծի հետ, կա՛մ հատում է շրջանագիծը:

Քննության առնենք առաջին դեպքը (նկ. 70,բ): Տանենք $C_1D_1$ շոշափողը, որը զուգահեռ է $CD$-ին ($C_1$-ը և $D_1$-ը այդ շոշափողի





ա)




Նկ. 70

հատման կետերն են $BC$ և $AD$ կողմերի հետ): Քանի որ $ABC_1D_1$-ը շրջանագծին արտագծյալ քառանկյուն է, ապա ըստ նրա կողմերի հատկության՝ $$AB+C_1D_1=BC_1+AD_1: \quad (2)$$

Բայց $BC_1=BC-C_1C$, $AD_1=AD-D_1D$: Հետևաբար՝ (2) հավասարությունից ստանում ենք. $C_1D_1+C_1C+D_1D=BC+AD-AB$:

Այս հավասարության աջ մասը,հաշվի առնելով (1) հավասարությունը, հավասար է $CD$: Այսպիսով՝ հանգում ենք հետևյալ հավասարությանը. $C_1D_1+C_1C+D_1D=CD$:

Ստացվում է, որ $C_1CDD_1$ քառանկյան կողմերից մեկը հավասար է մյուս երեք կողմերի գումարին: Իսկ դա լինել չի կարող և, հետևաբար, մեր ենթադրությունը սխալ է:

Նույն եղանակով ապացուցվում է նաև, որ $CD$ ուղիղը չի կարող լինել շրջանագծին հատող: Հետևաբար՝ $CD$-ն շոշափում է շրջանագիծը, ինչը և պահանջվում էր ապացուցել:

**257.** Եռանկյանն արտագծած շրջանագծի կենտրոնը գտնվում է միջնագծի վրա: Ապացուցեք, որ այդ եռանկյունը հավասարասրուն է, կամ՝ ուղղանկյուն:

**258.** Հավասարասրուն եռանկյանը ներգծած է $O_1$ կենտրոնով շրջանագիծ, և արտագծված է $O_2$ կենտրոնով շրջանագիծ: Ապացուցեք, որ $O_1$ և $O_2$ կենտրոնները գտնվում են եռանկյան հիմքի միջնուղղահայացի վրա:

**259.** Ապացուցեք, որ եթե շեղանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ, ապա այդ շեղանկյունը քառակուսի է:

**260.** Ապացուցեք, որ եթե քառանկյան հանդիպակաց անկյունների գումարը $180^0$ է, ապա այդ քառանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ:

Լ ո ւ ծ ո ւ մ : Դիցուք՝ $ABCD$ քառանկյան մեջ $\angle A+\angle C=180^0$ (1)

Քառանկյան գագաթներից երեքով՝ $A$-ով, $B$-ով և $D$-ով տանենք շրջանագիծ (նկ. 71,ա): Ապացուցենք, որ այն անցնում է նաև $C$ գագաթով, և դրանից կհետևի, որ այդ շրջանագիծն արտագծված է $ABCD$ քառանկյանը:

Ենթադրենք՝ այդպես չէ: Այդ դեպքում $C$ գագաթը ընկած կլինի կա մ շրջանից դուրս, կա մ նրա ներսում: Քննության առնենք առաջին դեպքը (նկ. 71,բ): Այս դեպքում $\angle C=\frac{1}{2}(\cup DAB-\cup EF)$




ա)




բ)

Նկ. 71

(տե՛ս խնդիր 252-ը), և հետևաբար՝ $\angle C<\frac{1}{2}\cup DAB$: Քանի որ

$\angle A=\frac{1}{2}\cup BED$, ապա $\angle A+\angle C<\frac{1}{2}$ $(\cup BED+\cup DAB)=\frac{1}{2}\cdot 360^0=180^0$:

Այսպիսով՝ ստացվում է, որ $\angle A+\angle C<180^0$: Իսկ դա հակասում է (1) պայմանին, և, ուրեմն, մեր ենթադրությունը սխալ է:

Նույն եղանակով ապացուցվում է նաև, որ $C$ գագաթը չի կարող ընկած լինել շրջանի ներսում: Հետևաբար՝ $C$ գագաթը գտնվում է շրջանագծի վրա, ինչը և պահանջվում էր ապացուցել:

**261.** $A$ և $B$ կետերից տարված են $AOB$ անկյան կողմերին ուղղահայաց ուղիղներ, որոնք հատվում են անկյան ներսում գտնվող $C$ կետում: Ապացուցեք, որ $ACBO$ քառանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ:

**262.** Ապացուցեք, որ սեղանի անկյունների կիսորդների հատումից ստացված ուռուցիկ քառանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ:

**263.** $ABC$ ուղղանկյուն եռանկյան մեջ $AC$ կողմի $M$ կետից տարված է $AB$ ներքնաձիգին ուղղահայաց՝ $MH$-ը: Ապացուցեք, որ $MHC$ և $MBC$ անկյունները հավասար են:

**264.** Ապացուցեք, որ եթե զուգահեռագծին կարելի է և ներգծել, և արտագծել շրջանագիծ, ապա այդ զուգահեռագիծը քառակուսի է:

**265.** Տրված են $a$ ուղիղը, նրա վրա $A$ կետը և նրա վրա չգտնվող $B$ կետը: Կառուցեք շրջանագիծ, որն անցնի $B$ կետով և $a$ ուղիղը շոշափի $A$ կետում:

**266.** Տրված են երկու զուգահեռ ուղիղներ և մի կետ, որը չի գտնվում դրանցից ոչ մեկի վրա: Կառուցեք այդ կետով անցնող շրջանագիծ, որին այդ ուղիղները լինեն շոշափող:

# ՄԱԿԵՐԵՍ




## § 1 ԲԱԶՄԱՆԿՅԱՆ ՄԱԿԵՐԵՍԸ

34 **Բազմանկյան մակերեսի հասկացությունը**: Մակերեսի հասկացությունը մեզ ծանոթ է ամենօրյա փորձից: Ամենքն էլ հասկանում են այն խոսքի իմաստը, երբ ասվում է. սենյակի մակերեսը տասնվեց քառակուսի մետր է, այգու հողակտորի մակերեսը ութ ար է, և այլն: Այժմ մենք կդիտարկենք հարցեր, որոնք վերաբերում են բազմանկյունների մակերեսներին:

Կարելի է ասել. բազմանկյան մակերեսը հարթության այն մասի մեծությունն է, որ գրավում է այդ բազմանկյունը: Մակերեսներ չափելու համար ընտրվում է չափման միավոր, և դա համանման է հատվածների երկարությունների չափմանը: Որպես մակերեսների չափման միավոր է ընդունվում այն քառակուսին, որի կողմը հավասար է հատվածների չափման միավորին: Այսպես, եթե իբրև հատվածների չափման միավոր ընդունվում է սանտիմետրը, ապա որպես մակերեսների չափման միավոր է ծառայում 1սմ կողմով քառակուսին: Այդպիսի քառակուսին կոչվում է *քառակուսի սանտիմետր* և նշանակվում է *սմ²*: Նույն կերպ որոշվում է *քառակուսի մետրը* (մ²), *քառակուսի միլիմետրը* (մմ²) և այլն:

Մակերեսների չափման ընտրված միավորի դեպքում յուրաքանչյուր բազմանկյան մակերեսն արտահայտվում է դրական թվով: Այդ թիվը ցույց է տալիս, թե տվյալ բազմանկյան մեջ քանի անգամ են տեղավորվում ընտրված միավորն ու նրա մասերը: Օրինակ. 72,ա նկարում պատկերված է ուղղանկյուն, որի մեջ քառակուսի սանտիմետրը տեղավորվում է ճիշտ 6 անգամ: Դա նշանակում է, որ ուղղանկյան մակերեսը հավասար է 6սմ²: 72,բ նկարում պատկերված $ABCD$ սեղանի մեջ քառակուսի սանտիմետրը տեղավորվում է երկու անգամ, բայց սեղանից մնում է մի մաս՝ $CDE$ եռանկյունը, որի մեջ քառակուսի

սանտիմետրը ամբողջությամբ չի տեղավորում: Այդ եռանկյան մակերեսը չափելու համար հարկավոր է օգտագործել քառակուսի սանտիմետրի մասերը. օրինակ՝ քառակուսի միլիմետրը, որը կազմում է քառակուսի սանտիմետրի 0,01 մասը: Դա ցույց է տրված 72,գ նկարում, որտեղ քառակուսի սանտիմետրը տրոհված է 100 քառակուսի միլիմետրի (այդ և 72,դ նկարները ավելի դիտողական դարձնելու նպատակով պատկերված են խոշորացված մասշտաբներով): 72,դ նկարում երևում է, որ $CDE$ եռանկյան մեջ քառակուսի միլիմետրը տեղավորվում է 14 անգամ, բայց մնում է եռանկյան այնպիսի մաս, որի մեջ քառակուսի միլիմետրը ամբողջությամբ չի տեղավորվում (նկարի վրա այդ մասը ստվերագծված է): Հետևաբար՝ կարելի է ասել, որ $ABCD$ սեղանի մակերեսը մոտավորապես 2,14սմ$^2$ է: $CDE$ եռանկյան այդ մնացած մասը կարելի է չափել քառակուսի սանտիմետրի ավելի փոքր մասերի օգնությամբ. այդ դեպքում ստացվում է սեղանի մակերեսի ավելի ճշգրիտ արժեք:

Չափման նկարագրված ընթացքը կարելի է երկար շարունակել, սակայն գործնականում դա այնքան էլ հարմար չէ: Սովորաբար, չա-



ա)



բ)



գ)



դ)

Նկ. 72

փում են բազմանկյունների հետ կապված որոշ հատվածները միայն, իսկ հետո մակերեսը հաշվում են որոշակի բանաձևերով: Այդ բանաձևերի արտածումը հիմնվում է մակերեսների այն հատկությունների վրա, որոնք մենք հիմա կդիտարկենք:

Սկզբից նշենք, որ եթե երկու բազմանկյուններ հավասար են, ապա մակերեսների չափման միավորն ու նրա մասերը այդ բազմանկյուններին մեջ տեղավորվում են նույնքան անգամ, այսինքն՝ տեղի ունի հետևյալ հատկությունը.

$1^0$. *Հավասար բազմանկյունների մակերեսները հավասար են:*

Այնուհետև դիտարկենք բազմանկյուն, որը կազմված է մի քանի բազմանկյուններից (այս դեպքում ենթադրում ենք, որ այդ բազմանկյուններից ցանկացած երկուսը չունեն ընդհանուր մաս. տե՛ս նկար 73-ը): Ակնհայտ է, որ հարթության այն մասի մեծությունը, որ գրավում է ամբողջ բազմանկյունը, հանդիսանում է հարթության այն մասերի մեծությունների գումարը, որ գրավել են նրա բաղադրիչ բազմանկյունները:

Այսպիսով.

$2^0$. *Եթե բազմանկյունը կազմված է մի քանի բազմանկյուններից, ապա նրա մակերեսը հավասար է այդ բազմանկյունների մակերեսների գումարին:*

$1^0$ և $2^0$ հատկությունները համարվում են *մակերեսների հիմնական հատկություններ:* Հիշենք, որ համանման հատկություններով օժտված են նաև հատվածների երկարությունները:

Այս հատկությունների հետ մեկտեղ մեզ պետք է գալու մակերեսների ևս մեկ հատկություն.

$3^0$. *Քառակուսու մակերեսը հավասար է նրա կողմի քառակուսուն:*

Այս հատկության հակիրճ ձևակերպումը պետք է հասկանալ այսպես. եթե քառակուսու կողմը հատվածների չափման ընտրված




$S_{ABCDE} = S_F + S_Q$




$S_{MNPQ} = S_{F_1} + S_{F_2} + S_{F_3}$

Նկ. 73

միավորով արտահայտվում է $a$ թվով, ապա այդ քառակուսու մակերեսն արտահայտվում է $a^2$ թվով: Նկար 74-ում պատկերված է 2,1սմ կողմով քառակուսի: Այն կազմված է չորս քառակուսի սանտիմետրից և քառասունմեկ քառակուսի միլիմետրից: Այսպիսով, այդ քառակուսու մակերեսը հավասար է 4,41սմ², որն էլ հավասար է նրա կողմի քառակուսուն. $4{,}41=(2{,}1)^2$:

3° պնդման ապացուցումը բերված է հաջորդ կետում:



Նկ. 74

**35** **Քառակուսու մակերեսը:** Ապացուցենք, որ $a$ կողմով քառակուսու $S$ մակերեսը հավասար է $a^2$:

Սկսենք այն դեպքից, երբ $a=\frac{1}{n}$, որտեղ $n$-ը ամբողջ թիվ է: Վերցնենք 1 կողմով քառակուսի և այն տրոհենք $n^2$ հատ հավասար քառակուսիների այնպես, ինչպես ցույց է տրված 75,ա նկարում (այս նկարում $n$=5): Քանի որ մեծ քառակուսու մակերեսը հավասար է 1-ի, ուրեմն փոքր քառակուսիներից յուրաքանչյուրի մակերեսը հավասար է $\frac{1}{n^2}$: Յուրաքանչյուր փոքր քառակուսու կողմը հավասար է $\frac{1}{n}$-ի, այսինքն՝ $a$-ի: Այսպիսով,

$$S=\frac{1}{n^2}=\left(\frac{1}{n}\right)^2=a^2: \qquad (1)$$

Այժմ ենթադրենք, որ $a$ թիվը վերջավոր տասնորդական կոտորակ է և ստորակետից հետո պարունակում է $n$ նիշ ($a$-ն կարող է լինել, մասնավորապես, նաև ամբողջ թիվ, որի համար $n$=0): Այդ դեպքում $m=a\cdot10^n$ թիվը ամբողջ թիվ է: $a$ կողմով քառակուսին տրոհենք $m^2$ հատ հավասար քառակուսիների այնպես, ինչպես ցույց է տրված 75,բ նկարում (այս նկարում $m$=7): Այդ դեպքում տրված քառակուսու յուրաքանչյուր կողմը տրոհվում է $m$ հավասար մասերի և, ուրեմն, փոքր քառակուսիներից յուրաքանչյուրի կողմը հավասար է $\frac{a}{m}=\frac{a}{a\cdot10^n}=\frac{1}{10^n}$: Ըստ (1) բանաձևի՝ յուրաքանչյուր փոքր




ա)




բ)




գ)

Նկ. 75

քառակուսու մակերեսը հավասար է $\left(\frac{1}{10^n}\right)^2$: Հետևաբար՝ տրված քառակուսու $S$ մակերեսը հավասար է.

$$m^2 \cdot \left(\frac{1}{10^n}\right)^2 = \left(\frac{m}{10^n}\right)^2 = \left(\frac{a \cdot 10^n}{10^n}\right)^2 = a^2 :$$

Վերջապես, ենթադրենք, որ $a$ թիվը անվերջ տասնորդական կոտորակ է: Դիտարկենք այնպիսի $a_n$ թիվ, որն ստացվում է $a$ թվից, եթե նրա ստորակետից հետո $(n+1)$-րդից սկսած բոլոր թվանշանները դեն ենք գցում: Քանի որ $a$ թիվը $a_n$-ից տարբերվում է ոչ ավելի, քան $\frac{1}{10^n}$-ը, ապա $a_n \le a \le a_n + \frac{1}{10^n}$:

Այստեղից՝ $a_n^2 \le a^2 \le \left(a_n + \frac{1}{10^n}\right)^2$: (2)

Պարզ է, որ տրված քառակուսու $S$ մակերեսը եզրափակված է $a_n$ կողմով քառակուսու և $a_n + \frac{1}{10^n}$ կողմով քառակուսու մակերեսների միջև (նկ. 75,գ), այսինքն՝ $a_n^2$ և $\left(a_n + \frac{1}{10^n}\right)^2$ մեծությունների միջև.

$$a_n^2 \le S \le \left(a_n + \frac{1}{10^n}\right)^2 : \qquad (3)$$

Այժմ պատկերացնենք, որ $n$ թիվը անսահմանափակորեն մեծացնում ենք: Այդ ընթացքում $\frac{1}{10^n}$ թիվը կդառնա որքան ուզեք

փոքր: Ուրեմն՝ $\left(a_n+\frac{1}{10^n}\right)^2$ թիվը $a_n{}^2$ թվից կտարբերվի որքան ուզեք փոքր չափով: Հետևաբար, (2) և (3) անհավասարություններից բխում է. որ $S$ թիվը որքան ուզեք քիչ կտարբերվի $a^2$ թվից: Դրանից հետևում է, որ նրանք հավասար են. $S=a^2$, ինչն էլ պահանջվում էր ապացուցել:

## (36) Ուղղանկյան մակերեսը:

Թ ե ո ր ե մ : *Ուղղանկյան մակերեսը հավասար է նրա կից կողմերի արտադրյալին:*



ա)



բ) Նկ. 76

Ա պ ա ց ու ց ու մ : Դիտարկենք $a$, $b$ կողմերով և $S$ մակերեսով ուղղանկյունը (նկ. 76,ա): Ապացուցենք, որ $S=ab$:

Ուղղանկյունը լրացնենք այնպես, մինչև ստացվի $a+b$ կողմով քառակուսի, ինչպես ցույց է տրված 76,բ նկարում: Ըստ $3^0$ հատկության՝ այդ քառակուսու մակերեսը հավասար է $(a+b)^2$: Մյուս կողմից՝ այդ քառակուսին կազմված է $S$ մակերեսով տրված ուղղանկյունից, նրան հավասար և, ուրեմն, նույնպես $S$ մակերեսով մեկ այլ ուղղանկյունից (ըստ մակերեսների $1^0$ հատկության) և $a^2$ ու $b^2$ մակերեսներով երկու քառակուսուց (ըստ մակերեսների $3^0$ հատկության): Ըստ մակերեսների $2^0$ հատկության՝

$$(a+b)^2=a^2+b^2+S+S \text{ կամ}$$

$$a^2+2ab+b^2=a^2+b^2+2S:$$

Այստեղից ստացվում է՝ $S=ab$: Թեորեմն ապացուցված է:



### Հարցեր և խնդիրներ

**267.** Թղթից կտրեք երկու հավասար ուղղանկյուն եռանկյուններ և դրանցով կազմեք. **ա)** հավասարասրուն եռանկյուն, **բ)** ուղղանկյուն, **գ)** ուղղանկյուն չհանդիսացող զուգահեռագիծ: Համեմատեք ստացված պատկերների մակերեսները:

**268.** Գծագրեք քառակուսի և այն ընդունեք որպես մակերեսների չափման միավոր: Այնուհետև գծագրեք. **ա)** քառակուսի, որի մակերեսն արտահայտող թիվը 4 է, **բ)** քառակուսի չհանդիսացող

ուղղանկյուն, որի մակերեսն արտահայտող թիվը 4 է, **գ)**եռանկյուն, որի մակերեսն արտահայտող թիվը 2 է:

**269.** Գծագրեք $ABCD$ զուգահեռագիծ և նշեք այնպիսի $M$ կետ, որը համաչափ է $D$ կետին $C$ կետի նկատմամբ: Ապացուցեք, որ $S_{ABCD}=S_{AMD}$:

**270.** $ABCD$ ուղղանկյան $AD$ կողմի վրա կառուցված է $ADE$ եռանկյուն այնպես, որ նրա $AE$ և $DE$ կողմերը $BC$ հատվածը հատում են $M$ և $N$ կետերում, ընդ որում՝ $M$ կետը $AE$ հատվածի միջնակետն է: Ապացուցեք, որ $S_{ABCD}=S_{ADE}$:

**271.** Գտեք քառակուսու մակերեսը, եթե նրա կողմը հավասար է. **ա)**1,2սմ, **բ)**$\frac{3}{4}$դմ, **գ)**$3\frac{1}{3}$մ:

**272.** Որոշեք այն քառակուսու կողմը, որի մակերեսը հավասար է. **ա)**16սմ$^2$, **բ)**25դմ$^2$, **գ)**2,25մ$^2$:

**273.** Քառակուսու մակերեսը 24սմ$^2$ է: Այդ քառակուսու մակերեսն արտահայտեք. **ա)**քառակուսի միլիմետրով, **բ)**քառակուսի դեցիմետրով:

**274.** Ինչպե՞ս կփոփոխվի քառակուսու մակերեսը, եթե նրա կողմերը՝ **ա)**մեծացվեն 3 անգամ, **բ)**փոքրացվեն 2 անգամ:

**275.** Քանի՞ անգամ պետք է մեծացնել քառակուսու կողմը, որպեսզի նրա մակերեսը մեծանա 36 անգամ:

**276.** Դիցուք՝ ուղղանկյան կից կողմերն են $a$-ն և $b$-ն, իսկ մակերեսը՝ $S$-ը: Գտեք. **ա)**$S$-ը, եթե $a$=8,5սմ, $b$=3,2սմ, **բ)**$S$-ը, եթե $a=\frac{2}{3}$սմ, $b$=1,2սմ, **գ)**$b$-ն, եթե $a$=32սմ, $S$=684սմ$^2$, **դ)**$a$-ն, եթե $b$=4,5դմ, $S$=1215սմ$^2$:

**277.** Ինչպե՞ս կփոփոխվի ուղղանկյան մակերեսը, եթե. **ա)**հանդիպակաց կողմերի զույգերից մեկը մեծացնեն 2 անգամ, **բ)**կողմերից յուրաքանչյուրը մեծացնեն 2 անգամ, **գ)**հանդիպակաց կողմերի զույգերից մեկը մեծացնեն 2 անգամ, իսկ մյուսը՝ փոքրացնեն 2 անգամ:

**278.** Ուղղանկյան կից կողմերը հարաբերում են, ինչպես 4:3, իսկ նրա պարագիծը 28սմ է: Գտեք այդ ուղղանկյան մակերեսը:

**279.** Ուղղանկյան կողմերից մեկը 12սմ է, իսկ մակերեսը՝ 96սմ$^2$: Գտեք այդ ուղղանկյան պարագիծը:

**280.** Քառակուսու պարագիծը 32սմ է, իսկ ուղղանկյան կողմերից մեկը՝ 45սմ: Գտեք այդ ուղղանկյան մյուս կողմը, եթե հայտնի է, որ նրա և քառակուսու մակերեսները հավասար են:

**281.** Տրված է $ABCD$ քառակուսին: $AD$ ճառագայթի վրա վերցված է $M$ կետն այնպես, որ $\angle AMB=30^0$, և $BM$=20սմ: Գտեք այդ քառակուսու մակերեսը:

**282.** $ABCD$ ուղղանկյան $A$ անկյան կիսորդը $BC$ կողմը հատում է $K$ կետում: Հայտնի է, որ $BK$=5սմ, $KC$=7սմ: Գտեք այդ ուղղանկյան մակերեսը:

**283.** $ABCD$ ուղղանկյան $A$ և $D$ անկյունների կիսորդները $BC$ կողմի հետ հատվում են միևնույն $M$ կետում: Գտեք այդ ուղղանկյան մակերեսը, եթե հայտնի է, որ նրա պարագիծը 42սմ է:

**284.** Անհրաժեշտ է սենյակի՝ 5,5մ և 6մ կողմերով ուղղանկյունաձև հատակը ծածկել մանրահատակով: Դրա համար քանի՞ մանրահատակի տախտակ կպահանջվի, եթե այդ տախտակներից յուրաքանչյուրն ունի 30սմ երկարությամբ և 5սմ լայնությամբ ուղղանկյան ձև:

**285.** 15սմ կողմով քառակուսաձև քանի՞ սալիկ կպահանջվի, որպեսզի երեսպատվի 3մ և 2,7մ կողմերով ուղղանկյունաձև պատը:

**286.** Հավասար ցանկապատերով հողակտորներից մեկն ունի քառակուսու, իսկ մյուսը այնպիսի ուղղանկյան ձև, որի երկարությունը 20մ է, լայնությունը՝ 10մ: Ո՞ր հողակտորի մակերեսն է ավելի մեծ և ինչքանով:

## § 2 ԶՈՒԳԱՀԵՌԱԳԾԻ, ԵՌԱՆԿՅԱՆ ԵՎ ՍԵՂԱՆԻ ՄԱԿԵՐԵՍՆԵՐԸ

(37) **Զուգահեռագծի մակերեսը:** Պայմանավորվենք զուգահեռագծի կողմերից մեկն անվանել *հիմք*, իսկ դրա հանդիպակաց կողմի ցանկացած կետից այդ հիմքն ընդգրկող ուղղին տարված ուղղահայացը՝ նրա *բարձրություն*:

Թ ե ո ր ե մ: *Զուգահեռագծի մակերեսը հավասար է նրա հիմքի և բարձրության արտադրյալին:*

Ա պ ա ց ու ց ու մ: Դիտարկենք $S$ մակերեսով $ABCD$ զուգահեռագիծը: Որպես հիմք ընդունենք $AD$ կողմը և տանենք բարձրություններ՝ $BH$-ը և $CK$-ն (նկ. 77): Պահանջվում է ապացուցել, որ $S=AD \cdot BH$:




Նկ. 77




Նկ. 78

Նախ ապացուցենք, որ $HBCK$ ուղղանկյան մակերեսը նույնպես հավասար է $S$-ի: $ABCK$ սեղանը կազմված է $ABCD$ զուգահեռագծից և $DCK$ եռանկյունից: Մյուս կողմից՝ այն կազմված է $HBCK$ ուղղանկյունից և $ABH$ եռանկյունից: Բայց $DCK$ և $ABH$ ուղղանկյուն եռանկյունները հավասար են՝ ըստ ներքնաձիգի և սուր անկյան (նրանց $AB$ և $CD$ ներքնաձիգները, որպես զուգահեռագծի հանդիպակաց կողմեր, հավասար են, իսկ անկյուններ 1-ը և 2-ը հավասար են՝ որպես համապատասխան անկյուններ, որոնք առաջանում են $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղները $AD$-ով հատելիս): Ուրեմն՝ այդ եռանկյունների մակերեսները հավասար են: Հետևաբար՝ $ABCD$ զուգահեռագծի և $HBCK$ ուղղանկյան մակերեսները նույնպես հավասար են: Այսինքն՝ $HBCK$ ուղղանկյան մակերեսը $S$ է: Ըստ ուղղանկյան մակերեսի մասին թեորեմի՝ $S=BC\cdot BH$: Բայց քանի որ $BC=AD$, ապա $S=AD\cdot BH$: Թեորեմն ապացուցված է:

(38) **Եռանկյան մակերեսը:** Եռանկյան կողմերից մեկը հաճախ անվանում են նրա *հիմք:* Եթե հիմքն ընտրված է, ապա ասելով «բարձրություն»՝ հասկանում են եռանկյան այն բարձրությունը, որ տարված է այդ հիմքին:

Թ ե ո ր ե մ: *Եռանկյան մակերեսը հավասար է հիմքի և բարձրության արտադրյալի կեսին:*

Ա պ ա ց ու ց ու մ: Դիցուք՝ $S$-ը $ABC$ եռանկյան մակերեսն է (նկ. 78): Որպես եռանկյան հիմք ընդունենք $AB$ կողմը և տանենք $CH$ բարձրությունը: Ապացուցենք, որ

$$S=\frac{1}{2}AB\cdot CH:$$

$ABC$ եռանկյունը լրացնենք՝ կառուցելով $ABCD$ զուգահեռագիծ, ինչպես ցույց է տրված նկար 78-ում: $ABC$ և $DCB$ եռանկյունները հավասար են՝ ըստ երեք կողմի ($BC$-ն նրանց ընդհանուր կողմ է, $AB=CD$ և $AC=BD$, որպես $ABDC$ զուգահեռագծի հանդիպակաց կողմեր): Հետևաբար՝ $ABC$ եռանկյան $S$ մակերեսը հավասար է $ABDC$ զուգահեռագծի մակերեսի կեսին: Այսինքն՝ $S=\frac{1}{2}AB\cdot CH$: Թեորեմն ապացուցված է:

Հ ե տ և ա ն ք  1 ։ *Ուղղանկյուն եռանկյան մակերեսը հավասար է նրա էջերի արտադրյալի կեսին։*

Հ ե տ և ա ն ք  2 ։ *Եթե երկու եռանկյան բարձրությունները հավասար են, ապա նրանց մակերեսները հարաբերում են, ինչպես հիմքերը։*

Օգտվելով հետևանք 2-ից՝ ապացուցենք թեորեմ՝ մեկական հավասար անկյուն ունեցող եռանկյունների մակերեսների հարաբերության մասին։

Թ ե ո ր ե մ ։ *Եթե եռանկյուններից մեկի անկյունը հավասար է մյուսի անկյանը, ապա այդ եռանկյունների մակերեսները հարաբերում են՝ ինչպես հավասար անկյուն կազմող կողմերի արտադրյալները։*

Ա պ ա ց ու ց ու մ ։ Դիցուք՝ $S$-ը և $S_1$-ը $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների մակերեսներն են, և նրանց մեջ $\angle A=\angle A_1$ (նկ. 79,ա)։ Ապացուցեք, որ

$$\frac{S}{S_1}=\frac{AB\cdot AC}{A_1B_1\cdot A_1C_1}:$$

$A_1B_1C_1$ եռանկյունը վերադրենք $ABC$ եռանկյան վրա այնպես, որ $A_1$ և $A$ գագաթները համընկնեն, իսկ $A_1B_1$ և $A_1C_1$ կողմերը վերադրվեն, համապատասխանաբար, $AB$ և $AC$ ճառագայթների վրա (նկ. 79,բ)։ $ABC$ և $AB_1C$ եռանկյուններն ունեն ընդհանուր բարձրություն՝ $CH$-ը։ Ուրեմն՝ $\frac{S}{S_{AB_1C}}=\frac{AB}{AB_1}$ (ըստ հետևանք 2-ի)։ $AB_1C$ և $A_1B_1C_1$ եռանկյունները նույնպես ունեն ընդհանուր բարձրություն՝ $B_1H_1$-ը։




Նկ. 79

Ուրեմն՝ $\frac{S_{AB_1C}}{S_{AB_1C_1}} = \frac{AC}{AC_1}$: Բազմապատկելով այս երկու հավասարությունները՝ ստացվում է. $\frac{S}{S_{AB_1C_1}} = \frac{AB \cdot AC}{AB_1 \cdot AC_1}$, կամ՝ $\frac{S}{S_1} = \frac{AB \cdot AC}{A_1B_1 \cdot A_1C_1}$:

Թեորեմն ապացուցված է:

**(39) Սեղանի մակերեսը:** Կամայական բազմանկյան մակերեսը հաշվելու համար, սովորաբար, վարվում են այսպես. բազմանկյունը տրոհում են եռանկյունների և գտնում են եռանկյուններից յուրաքանչյուրի մակերեսը: Այդ եռանկյունների մակերեսների գումարը հավասար է տրված բազմանկյան մակերեսին (նկ. 80): Օգտվելով այդ հնարքից՝ արտածենք սեղանի մակերեսը հաշվելու բանաձևը: Պայմանավորվենք՝ սեղանի *բարձրություն* անվանել այն ուղղահայացը, որը սեղանի հիմքերից մեկի կամայական կետից տարվում է մյուս հիմքն ընդգրկող ուղղին: Նկար 81-ում $BH$ հատվածը (ինչպես նաև $DH_1$ հատվածը) $ABCD$ սեղանի բարձրություն է:

Թ ե ո ր ե մ : *Սեղանի մակերեսը հավասար է նրա հիմքերի կիսագումարի և բարձրության արտադրյալին:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիտարկենք $ABCD$ սեղանը, որի հիմքերն են $AD$-ն և $BC$-ն, բարձրությունը՝ $BH$-ը, իսկ մակերեսը՝ $S$-ը (նկ. 81): Ապացուցենք, որ $S = \frac{1}{2}(AD + BC) \cdot BH$:

$BD$ անկյունագիծը սեղանը տրոհում է երկու՝ $ABD$ և $BDC$ եռանկյունների: Ուրեմն՝ $S = S_{ABD} + S_{BDC}$: $AD$ և $BH$ հատվածներն ընդունենք որպես $ABD$ եռանկյան հիմք և բարձրություն, իսկ $BC$ և $DH_1$ հատվածները՝ որպես $BDC$ եռանկյան հիմք և բարձրություն: Այդ




Նկ. 80




Նկ. 81

դեպքում $S_{ABD}=\frac{1}{2}AD\cdot BH$, $S_{BDC}=\frac{1}{2}BC\cdot DH_1$: Քանի որ $DH_1=BH$, ապա $S_{BDC}=\frac{1}{2}BC\cdot BH$: Այսպիսով՝

$$S=\frac{1}{2}AD\cdot BH+\frac{1}{2}BC\cdot BH=\frac{1}{2}(AD+BC)\cdot BH:$$

Թեորեմն ապացուցված է:



## Խնդիրներ

**287.** Դիցուք՝ զուգահեռագծի հիմքը $a$-ն է, բարձրությունը՝ h-ը, իսկ մակերեսը՝ $S$-ը: Գտեք. **ա)** $S$-ը, եթե $a$=15սմ, $h$=12սմ, **բ)** $a$-ն, եթե $S$=34սմ$^2$, $h$=8,5սմ, **գ)** $h$-ը, եթե $S$=162սմ$^2$, $a$=9սմ, **դ)** $a$-ն, եթե $h=\frac{1}{2}a$, $S=21a$:

**288.** Զուգահեռագծի անկյունագիծը 13սմ է և ուղղահայաց է զուգահեռագծի այն կողմին, որը 12սմ է: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**289.** Զուգահեռագծի կից կողմերը հավասար են 12սմ և 13սմ, իսկ սուր անկյունը $30^0$ է: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**290.** Շեղանկյան կողմը 6սմ է, իսկ անկյուններից մեկը՝ $150^0$: Գտեք շեղանկյան մակերեսը:

**291.** Զուգահեռագծի կողմը 8,1սմ է, իսկ 14սմ-ի հավասար անկյունագիծը նրա հետ կազմում է $30^0$ անկյուն: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**292.** Դիցուք՝ $a$-ն և $b$-ն զուգահեռագծի կից կողմերն են, իսկ $h_1$-ը և $h_2$-ը՝ բարձրությունները: Գտեք. **ա)** $h_2$-ը, եթե $a$=18սմ, $b$=30սմ, $h_1$=6սմ, $h_2>h_1$, **բ)** $h_1$-ը, եթե $a$=10սմ, $b$=15սմ, $h_2$=6սմ, $h_2>h_1$, **գ)** $h_1$-ը և $h_2$-ը, եթե մակերեսը՝ $S$=54սմ$^2$, $a$=4,5սմ, $b$=6սմ:

**293.** Զուգահեռագծի սուր անկյունը $30^0$ է, իսկ բութ անկյան գագաթից տարված բարձրությունները հավասար են 2սմ և 3սմ: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**294.** Գտեք զուգահեռագծի անկյունները, եթե նրա մակերեսը 40սմ$^2$ է, իսկ կողմերը՝ 10սմ և 8սմ:

**295.** Գտեք զուգահեռագծի անկյունները, եթե նրա մակերեսը 20սմ$^2$ է, իսկ բութ անկյան գագաթից կողմերից մեկին տարված բարձրությունը այդ կողմը տրոհում է 2սմ և 8սմ երկարությամբ հատվածների՝ սկսած սուր անկյան գագաթից:

**296.** $ABCD$ զուգահեռագծի $B$ անկյունը բութ է: $AD$ կողմի շարունակության վրա՝ $D$ կետից դեպի աջ նշված է $E$ կետն այնպես, որ $\angle ECD=60^0$, $\angle CED=90^0$, $AB$=4սմ, $AD$=10սմ: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**297.** $MPKT$ զուգահեռագծի $MT$ կողմի վրա նշված է $E$ կետը. $\angle PEM=90^0$, $\angle EPT=45^0$, $ME$=4սմ, $ET$=7սմ: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**298.** Որոշեք զուգահեռագծի պարագիծը, եթե նրա կից կողմերի տարբերությունը 10սմ է, իսկ բարձրությունները հարաբերում են, ինչպես 3:5:

**299.** Զուգահեռագծի անկյունագիծը հավասար է նրա կողմին: Գտեք զուգահեռագծի մակերեսը, եթե նրա մեծ կողմը 15,2սմ է, իսկ անկյուններից մեկը՝ $45^0$:

**300.** Քառակուսին և շեղանկյունը, որը քառակուսի չէ, ունեն հավասար պարագծեր: Համեմատեք այդ պատկերների մակերեսները:

**301.** Համեմատեք ուղղանկյան և զուգահեռագծի մակերեսները, եթե նրանք ունեն հավասար հիմքեր և հավասար պարագծեր:

**302.** Դիցուք՝ $a$-ն եռանկյան հիմքն է, $h$-ը՝ բարձրությունը, իսկ $S$-ը՝ մակերեսը: Գտեք. **ա)** $S$-ը, եթե $a$=7սմ, $h$=11սմ, **բ)** $h$-ը, եթե $a$=14սմ, $S$=37,8սմ$^2$, **գ)** $a$-ն, եթե $S=h^2$, $h$=2սմ:

**303.** $ABC$ եռանկյան $AB$ և $BC$ կողմերը համապատասխանաբար 16սմ և 22սմ են: Գտեք $BC$ կողմին տարված բարձրությունը, եթե $AB$ կողմին տարված բարձրությունը 11սմ է:

**304.** Եռանկյան երկու կողմերն են 7,5սմ և 3,2սմ: Դրանցից մեծին տարված բարձրությունը 2,4սմ է: Գտեք տրված կողմերից փոքրին տարված բարձրությունը:

**305.** Գտեք ուղղանկյուն եռանկյան մակերեսը, եթե նրա էջերն են. **ա)** 4սմ և 11սմ, **բ)** 12սմ և 3դմ:

**306.** Ուղղանկյուն եռանկյան էջերից մեկը 14սմ է, իսկ անկյուններից մեկը՝ $45^0$: Գտեք եռանկյան մակերեսը:

**307.** Երկու եռանկյան բարձրությունները հավասար են, իսկ նրանցից մեկի հիմքը երկու անգամ փոքր է մյուսի հիմքից: Գտեք այդ եռանկյունների մակերեսների հարաբերությունը:

**308.** $ABC$ եռանկյան մեջ $\angle C=135^0$, $AC$=6դմ, իսկ $BD$ բարձրությունը 2դմ է: Գտեք $ABD$ եռանկյան մակերեսը:

**309.** Գտեք 10սմ ներքնաձիգով հավասարասրուն ուղղանկյուն եռանկյան մակերեսը:

**310.** $ABCD$ ուղղանկյան $BD$ անկյունագիծը 12սմ է: $B$ գագաթի հեռավորությունը $AC$ ուղղից հավասար է 4սմ: Գտեք $ABC$ եռանկյան մակերեսը:

**311.** Համեմատեք այն երկու եռանկյունների մակերեսները, որոնց տրոհվում է տրված եռանկյունն իր միջնագծով:

**312.** $ABC$ եռանկյան $AB$ կողմի վրա վերցված $M$ կետը հատվածով միացված է $C$ գագաթին: Հայտնի է, որ $AB$=18սմ, $AM$=12սմ: Գտեք $ABC$ և $AMC$ եռանկյունների մակերեսների հարաբերությունը:

**313.** $ABC$ եռանկյան $AB$ և $AC$ կողմերի վրա վերցված են, համապատասխանաբար, $M$ և $N$ կետերն այնպես, որ $AB=2AM$, $AC=3AN$: Գտեք $ABC$ և $AMN$ եռանկյունների մակերեսների հարաբերությունը:

**314.** Գծեք $ABC$ եռանկյուն: $A$ գագաթով տարեք երեք այնպիսի ուղիղներ, որ դրանք եռանկյունը տրոհեն չորս՝ միմյանց հավասար մակերեսով եռանկյունների:

**315.** Ապացուցեք, որ շեղանկյան մակերեսը հավասար է անկյունագծերի արտադրյալի կեսին: Հաշվեք շեղանկյան մակերեսը, եթե նրա անկյունագծերը հավասար են. **ա)**3,2դմ և 14սմ, **բ)**4,6դմ և 2դմ:

**316.** Շեղանկյան անկյունագծերից մեկը $m$ մ է, իսկ մակերեսը՝ $27m$ մ$^2$: Գտեք շեղանկյան մյուս անկյունագիծը:

**317.** Ուռուցիկ քառանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են: Ապացուցեք, որ այդ քառանկյան մակերեսը հավասար է անկյունագծերի արտադրյալի կեսին:

**318.** Գտեք $AD$ և $BC$ հիմքերով $ABCD$ սեղանի մակերեսը, եթե **ա)**$AD$=21սմ, $BC$=17սմ, $BH$ բարձրությունը 7սմ է, **բ)**$\angle D=30^0$, $AD$=10սմ, $BC$=2սմ, $CD$=8սմ, **գ)**$CD \perp AD$, $AD$=5սմ, $CD$=8սմ, $BC$=13սմ:

**319.** $ABCD$ սեղանի $AD$ և $BC$ հիմքերը, համապատասխանաբար, 10սմ և 8սմ են: $ACD$ եռանկյան մակերեսը 30սմ$^2$ է: Գտեք սեղանի մակերեսը:

**320.** Ուղղանկյուն սեղանի մակերեսը 30սմ$^2$ է, պարագիծը՝ 28սմ, իսկ փոքր սրունքը՝ 3սմ: Գտեք սեղանի մեծ սրունքը:

**321.** Հավասարասրուն սեղանի պարագիծը 32սմ է, սրունքը՝ 5սմ, իսկ մակերեսը՝ 44սմ$^2$: Գտեք սեղանի բարձրությունը:

**322.** Գտեք այն ուղղանկյուն սեղանի մակերեսը, որի փոքր կողմերը 6սմ են, իսկ մեծ անկյունը՝ $135^0$:

**323.** Հավասարասրուն սեղանի բութ անկյունը $135^0$ է, իսկ այդ անկյան գագաթից տարված բարձրությունը մեծ հիմքը տրոհում է 1,4սմ և 3,4 սմ հատվածների: Գտեք սեղանի մակերեսը:

**324.** Սեղանի հիմքերը հարաբերում են, ինչպես 5:3: Փոքր հիմքի միջնակետը մեծ հիմքի ծայրակետերին միացնելուց ստացված եռանկյան մակերեսը 15սմ$^2$ է: Հաշվեք սեղանի մակերեսը:

## § 3 ԽՈՐԱՆԱՐԴԻ ԵՎ ՈՒՂՂԱՆԿՅՈՒՆԱՆԻՍՏԻ ՄԱԿԵՐԵՎՈՒՅԹՆԵՐԻ ՄԱԿԵՐԵՍՆԵՐԸ

(40) **Խորանարդի մակերևույթի մակերեսը:** Հիշենք, որ խորանարդն այն ուղղանկյունանիստն է, որի բոլոր կողերը հավասար են: Խորանարդի մակերևույթը կազմված է վեց նիստից, որոնցից յուրաքանչյուրը քառակուսի է (նկ. 82): Եթե խորանարդի կողն ունի $a$ երկարություն, ապա յուրաքանչյուր նիստի մակերեսը հավասար է $a^2$: Ուրեմն՝ խորանարդի բոլոր նիստերի մակերեսների գումարը հավասար է $6a^2$, որն էլ կլինի խորանարդի մակերևույթի մակերեսը:

Այսպիսով՝ խորանարդի մակերևույթի մակերեսը հաշվվում է $S=6a^2$ բանաձևով:

(41) **Ուղղանկյունանիստի մակերևույթի մակերեսը:** Հիշենք, որ ուղղանկյունանիստն ունի վեց նիստ, որոնցից յուրաքանչյուրը ուղղանկյուն է:

Այդ նիստերից յուրաքանչյուր զույգ հավասար են. դրանք հանդիպակաց նիստերն են, որոնք չունեն ընդհանուր գագաթ: Հանդիպակաց նիստերից երկուսը, օրինակ՝ $ABCD$ և $A_1B_1C_1D_1$ ուղղանկյունները, դիտվում են որպես հիմքեր, իսկ մյուս չորս նիստերը՝ որպես կողմնային նիստեր (նկ. 83):

Ուղղանկյունանիստի կողմնային նիստերի մակերեսների գումարը անվանում են *կողմնային մակերևույթի մակերես: Ուղղանկյունանիստի լրիվ մակերևույթի մակերեսը նրա բոլոր նիստերի մակերեսների գումարն է:*

Այսպիսով՝ ուղղանկյունանիստի լրիվ մակերևույթի $S_{լրիվ}$ մակերեսը արտահայտվում է $S_{լրիվ}=S_{կողմ}+2S_{հիմք}$ (1) բանաձևով, որտեղ $S_{կողմ}$-ը կողմնային մակերևույթի մակերեսն է, իսկ $S_{հիմք}$-ը՝ հիմքի մակերեսը:



Նկ. 82



Նկ. 83

Դիցուք՝ ուղղանկյունանիստի միևնույն, օրինակ, $A$ գագաթը պարունակող կողերի երկարություններն են՝ $AD=a$, $AB=b$, $AA_1=c$: Այդ դեպքում, օգտվելով ուղղանկյան մակերեսի հաշվման բանաձևից, ստանում ենք. $S_{ABCD}=ab$, $S_{AA_1D_1D} = ac$, $S_{AA_1B_1B} = bc$ : Հաշվի առնելով, որ հանդիպակաց նիստերը հավասար են, ստանում ենք ուղղանկյունանիստի լրիվ մակերևույթի մակերեսի բանաձևը.

$$S_{լրիվ}=2ac+2bc+2ab \qquad (2)$$

Եթե $ABCD$ ուղղանկյունն ընդունում ենք որպես ուղղանկյունանիստի հիմք, ապա հեշտ է տեսնել, որ $S_{հիմք}=ab$: Այդ դեպքում կողմնային մակերևույթի մակերեսը, այսինքն՝ հիմք չհանդիսացող նիստերի մակերեսների գումարը, հաշվվում է $S_{կողմ}=2ac+2bc$ (3) բանաձևով:

(3) բանաձևը գրենք $S_{կողմ}=(2a+2b)c$ տեսքով: Նկատենք, որ $2a+2b$ արտահայտությունը ներկայացնում է ուղղանկյունանիստի հիմքի, այն է՝ $ABCD$ ուղղանկյան պարագիծը, իսկ $c$-ն կողմնային կողն է:

Այսպիսով՝ *ուղղանկյունանիստի կողմնային մակերևույթի մակերեսը հավասար է ուղղանկյունանիստի հիմքի պարագծի և կողմնային կողի արտադրյալին:*



## Հարցեր և խնդիրներ

**325.** Գտեք խորանարդի մակերևույթի մակերեսը, եթե նրա կողը հավասար է. **ա)** 2,1սմ, **բ)** 3,5մ:

**326.** Գտեք այն խորանարդի նիստի մակերեսը, որի մակերևույթի մակերեսը հավասար է. **ա)** 24սմ$^2$, **բ)** 150դմ$^2$:
Կարո՞ղ եք գտնել այդ խորանարդի կողը:

**327.** Քանի՞ անգամ կմեծանա խորանարդի մակերևույթի մակերեսը, եթե **ա)** նրա յուրաքանչյուր կողը մեծացնեն 4 անգամ, **բ)** նրա յուրաքանչյուր նիստի մակերեսը մեծացնեն 4 անգամ:

**328.** Սկզբում խորանարդի յուրաքանչյուր կողը մեծացրին 3 անգամ, իսկ հետո՝ յուրաքանչյուր նիստի մակերեսը փոքրացրին 6 անգամ: Մեծացա՞վ, թե՞ փոքրացավ խորանարդի մակերևույթի մակերեսը:

**329.** Ուղղանկյունանիստի հիմքը $a$=6սմ և $b$=7սմ կից կողմերով ուղղանկյուն է, իսկ կողմնային կողը՝ $c$=8սմ: Գտեք այդ ուղղանկյունանիստի՝ **ա)** հիմքի մակերեսը, **բ)** կողմնային մակերևույթի մակերեսը, **գ)** լրիվ մակերևույթի մակերեսը:

**330.** Ուղղանկյունանիստի հիմքը 24սմ պարագծով քառակուսի է, իսկ կողմնային կողը հավասար է 5,5սմ: Գտեք այդ ուղղանկյունանիստի **ա)**կողմնային մակերևույթի մակերեսը, **բ)**լրիվ մակերևույթի մակերեսը:

**331.** Ուղղանկյունանիստի հիմքը 8սմ կողմով քառակուսի է, իսկ կողմնային մակերևույթի մակերեսը հավասար է 112սմ$^2$: Գտեք ուղղանկյունանիստի կողմնային կողը և լրիվ մակերևույթի մակերեսը:

**332.** Ուղղանկյունանիստի հիմքը 3սմ և 5սմ կից կողմերով ուղղանկյուն է: Գտեք ուղղանկյունանիստի կողմնային մակերևույթի մակերեսը, եթե հայտնի է, որ նրա փոքր կողմնային նիստը քառակուսի է:

**333.** Ուղղանկյունանիստի հիմքի կողմերից մեկը 12սմ է, իսկ պարագիծը՝ 40սմ: Գտեք նրա կողմնային կողը, եթե հայտնի է, որ լրիվ մակերևույթի մակերեսը հավասար է 592սմ$^2$:

**334.** Արկղն ունի 3,5դմ կողմով խորանարդի ձև: Որքա՞ն նրբատախտակ է անհրաժեշտ այդ արկղը պատրաստելու համար:

**335.** Ուղղանկյունանիստի ձև ունեցող սենյակի չափերն են. երկարությունը՝ 6մ, լայնությունը՝ 4մ, բարձրությունը՝ 3մ: Գտեք սենյակի՝ **ա)**հատակի մակերեսը, **բ)**պատերի մակերեսը:

**336.** 3մ բարձրություն ունեցող սենյակի ուղղանկյունաձև հատակն ունի 5մ և 4,5մ չափսեր: Առնվազն քանի՞ փաթեթ պաստառ է հարկավոր այդ սենյակի պատերը լրիվ պաստառապատելու համար, եթե յուրաքանչյուր փաթեթ ունի 9,5մ$^2$ մակերես (դուռը և պատուհանը անտեսել):

**337.** 20մ երկարությամբ, 10մ լայնությամբ և 2մ բարձրությամբ ուղղանկյունանիստի ձև ունեցող ջրավազանի հատակը և պատերը անհրաժեշտ են սալապատել: Սալիկներից յուրաքանչյուրն ունի 2դմ կողմով քառակուսու ձև: Քանի՞ այդպիսի սալիկ է հարկավոր:

**338.** Ի՞նչ չափսեր պետք է ունենա ուղղանկյունաձև ստվարաթուղթը, որպեսզի նրանից կարողանաք, առանց թափոնի, պատրաստել 7սմ կողմով խորանարդ, որի յուրաքանչյուր նիստը լինի առանց կցոնի:

## § 4 ՊՅՈՒԹԱԳՈՐԱՍԻ ԹԵՈՐԵՄԸ

(42) **Պյութագորասի թեորեմը:** Դեռ հին ժամանակներից բացահայտվել է մի նշանավոր առնչություն՝ ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգի և էջերի միջև: Թեորեմը, որ հաստատում է այդ առնչությունը,




ա)




բ)

Նկ. 84

կոչվում է Պյութագորասի թեորեմ: Դա երկրաչափության կարևոր թեորեմներից մեկն է, և մենք այն կապացուցենք՝ օգտվելով բազմանկյունների մակերեսների հատկություններից:

Թ ե ո ր ե մ : *Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգի քառակուսին հավասար է էջերի քառակուսիների գումարին:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիտարկենք $a$, $b$ էջերով և $c$ ներքնաձիգով ուղղանկյուն եռանկյունը (նկ. 84,ա): Ապացուցենք, որ $c^2=a^2+b^2$:

Եռանկյունը լրացնենք այնպես, մինչև կառուցվի $a+b$ կողմով քառակուսի՝ ինչպես ցույց է տրված 84,բ նկարում: Այդ քառակուսու $S$ մակերեսը հավասար է $(a+b)^2$: Մյուս կողմից՝ այդ քառակուսին կազմված է $c$ կողմով մի քառակուսուց և չորս հավասար եռանկյուններից, որոնցից յուրաքանչյուրի մակերեսը $\frac{1}{2}ab$ է: Ուրեմն՝

$S=4\cdot\frac{1}{2}ab+c^2=2ab+c^2$: Այսպիսով՝ $(a+b)^2=2ab+c^2$, որտեղից՝ $c^2=a^2+b^2$:

Թեորեմն ապացուցված է:

Ուշագրավ է Պյութագորասի թեորեմի պատմությունը: Այդ թեորեմը թեև կապվում է Պյութագորասի անվան հետ, սակայն այն հայտնի է եղել նախքան Պյութագորասը: Բաբելոնյան բնագրերում Պյութագորասից դեռևս 1200 տարի առաջ հիշատակվել է այդ թեորեմը:

Հնարավոր է, որ դրա ապացուցումը այն ժամանակներում չեն իմացել, իսկ ներքնաձիգի և էջերի միջև առնչությունը բացահայտվել է զուտ փորձնական եղանակով՝ չափումների հիման վրա: Այդ փաստերին վերաբերող ճշգրիտ տեղեկություններ չեն պահպանվել: Որոշ



Պյութագորաս (մ.թ.ա. VI դարի հին հույն գիտնական)

պատմաբաններ կարծում են, որ այդ նշանավոր թեորեմն ապացուցել են Պյութագորասի հետևորդները և այն անվանել իրենց մեծ ուսուցչի պատվին: Թերևս հնարավոր է, որ այդ թեորեմի ապացուցումը գտել է հենց ինքը՝ Պյութագորասը: Այդ մասին պահպանվել է մի հին ավանդություն, ըստ որի Պյութագորասն իր հայտնագործության պատվին աստվածներին զոհ է մատուցել մի մեծ ցուլ, իսկ ըստ այլ վկայությունների՝ նույնիսկ հարյուր ցուլ: Հետագա դարերի ընթացքում գտել են Պյութագորասի թեորեմի տարբեր ապացուցումներ: Ներկայումս դրանց քանակն անցնում է հարյուրից: Մենք արդեն ծանոթ ենք այդ ապացուցումներից մեկին, հաջորդ դասարանում կծանոթանանք մեկ այլ ապացուցման ևս: Անցյալի մեծ մտածողներից ու գրողներից շատերն անդրադարձել են այդ նշանավոր թեորեմին և դրան են նվիրել իրենց տողերը:

## (43) Պյութագորասի թեորեմի հակադարձ թեորեմը:

Թ ե ո ր ե մ : *Եթե եռանկյան մի կողմի քառակուսին հավասար է մյուս երկու կողմերի քառակուսիների գումարին, ապա այդ եռանկյունը ուղղանկյուն եռանկյուն է:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիցուք՝ $ABC$ եռանկյան մեջ $AB^2=AC^2+BC^2$: Ապացուցենք, որ $C$ անկյունն ուղիղ է: Դիտարկենք $C_1$ ուղիղ անկյունով այն $A_1B_1C_1$ ուղղանկյուն եռանկյունը, որի համար $A_1C_1=AC$ և $B_1C_1=BC$: Ըստ Պյութագորասի թեորեմի՝ $A_1B_1^2=A_1C_1^2+B_1C_1^2$ և, ուրեմն, $A_1B_1^2=AC^2+BC^2$:

Սակայն, ըստ թեորեմի պայմանի՝ $AC^2+BC^2=AB^2$: Հետևաբար $A_1B_1^2=AB^2$, որից եզրակացնում ենք, որ $A_1B_1=AB$: Այսպիսով՝ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունները, ըստ երեք կողմի, հավասար են: Ուրեմն՝ $\angle C=\angle C_1$, այսինքն՝ $ABC$ եռանկյան $C$ անկյունն ուղիղ է: Թեորեմն ապացուցված է:

Ըստ Պյութագորասի թեորեմի հակադարձ թեորեմի՝ 3, 4 և 5 կողմերով եռանկյունը ուղղանկյուն եռանկյուն է. $5^2=3^2+4^2$: Ուղղանկյուն եռանկյուն է նաև 5, 12, 13 կողմերով, 8, 15, 17 կողմերով և 7, 24, 25 կողմերով եռանկյուններից յուրաքանչյուրը (բացատրեք, թե ինչու): Ուղղանկյուն եռանկյունները, որոնց կողմերն արտահայտվում են ամբողջ թվերով, կոչվում են *պյութագորյան եռանկյուններ:* Կարելի է ապացուցել, որ այդպիսի եռանկյունների $a$, $b$ էջերը և $c$ ներքնաձիգը արտահայտվում են հետևյալ բանաձևերով. $a=2m\cdot n$, $b=m^2-n^2$, $c=m^2+n^2$, որտեղ $m$-ը և $n$-ը կամայական բնական թվեր են, $m>n$: 3, 4 և 5 կողմերով եռանկյունը հաճախ անվանում են նաև *եգիպտական եռանկյուն.* այն հայտնի է եղել դեռևս հին եգիպտացիներին: Ուղիղ անկյուն կառուցելու համար եգիպտացիները վարվել են այսպես. պարանի վրա կատարել են նշումներ այնպես, որ դրանցով պարանը տրոհվի 12 հավասար մասերի: Այնուհետև, կապելով պարանի ծայրերը, գետնի վրա ձողերի օգնությամբ այն ձգել են 3, 4 և 5 կողմերով եռանկյան տեսքով: Այդ դեպքում 3 և 4 երկարությամբ կողմերը կազմում են ուղիղ անկյուն:



## Խնդիրներ

**339.** Գտեք ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգը՝ ըստ տրված $a$ և $b$ էջերի. **ա)** $a=6$, $b=8$, **բ)** $a=5$, $b=12$, **գ)** $a=\frac{3}{7}$, $b=\frac{4}{7}$, **դ)** $a=1$, $b=\sqrt{3}$ :

**340.** Ուղղանկյուն եռանկյան էջերն են $a$-ն և $b$-ն, իսկ ներքնաձիգը՝ $c$-ն: Գտեք $b$-ն, եթե՝ **ա)** $a=12$, $c=13$, **բ)** $a=9$, $c=15$, **գ)** $a=2$, $c=\sqrt{5}$ , **դ)** $a=6$, $c=2b$:

**341.** Գտեք $c$ ներքնաձիգով ուղղանկյուն եռանկյան $60^0$-ի անկյան հանդիպակաց էջը:

**342.** $ABCD$ ուղղանկյան մեջ գտեք. **ա)** $AD$-ն, եթե $AB=5$, $AC=13$, **բ)** $BC$-ն, եթե $CD=1{,}5$, $AC=2{,}5$, **գ)** $CD$-ն, եթե $BD=17$, $BC=15$:

**343.** Հավասարասրուն եռանկյան սրունքը 17սմ է, իսկ հիմքը՝ 16սմ: Գտեք հիմքին տարված բարձրությունը:

**344.** Գտեք. **ա)** հավասարակողմ եռանկյան բարձրությունը, եթե նրա կողմը 6սմ է, **բ)** հավասարակողմ եռանկյան կողմը, եթե նրա բարձրությունը 4սմ է:

**345.** Քառակուսու անկյունագիծը 20սմ է: Գտեք նրա կողմը:

**346.** Ապացուցեք, որ հավասարակողմ եռանկյան մակերեսը հաշվվում է $S=\frac{a^2\sqrt{3}}{4}$ բանաձևով, որտեղ $a$-ն եռանկյան կողմն է: Գտեք հավասարակողմ եռանկյան մակերեսը, եթե նրա կողմը հավասար է. **ա)**4սմ, **բ)**1,2սմ, **գ)** $2\sqrt{2}$ սմ:

**347.** Գտեք հավասարասրուն եռանկյան սրունքը և մակերեսը, եթե **ա)**հիմքը 12սմ է, իսկ հիմքին տարված բարձրությունը՝ 8սմ, **բ)**հիմքը 18սմ է, իսկ նրա հանդիպակաց անկյունը $120^0$, **գ)**եթե այն ուղղանկյուն եռանկյուն է, որի ներքնաձիգին տարված բարձրությունը 7սմ է:

**348.** Ուղղանկյուն եռանկյան էջերն են $a$-ն և $b$-ն: Գտեք ներքնաձիգին տարված բարձրությունը, եթե. **ա)**$a$=5, $b$=12, **բ)**$a$=12, $b$=16:

**349.** Գտեք 10սմ, 10սմ, 12սմ կողմերով եռանկյան բարձրությունները:

**350.** Գտեք շեղանկյան կողմը և մակերեսը, եթե նրա անկյունագծերը 10սմ և 24սմ են:

**351.** Շեղանկյան կողմը 10սմ է. իսկ անկյունագծերից մեկը՝ 12սմ: Գտնել այդ շեղանկյան մյուս անկյունագիծը և մակերեսը:

**352.** Գտեք $AB$ և $CD$ հիմքերով $ABCD$ սեղանի մակերեսը. **ա)**$AB$=10սմ, $BC$=$DA$=13սմ, $CD$=20սմ, **բ)**$\angle C=\angle D=60^0$, $AB$=$BC$=8սմ, **գ)**$\angle C=\angle D=45^0$, $AB$=6սմ, $BC=9\sqrt{2}$ սմ:

**353.** Ուղղանկյուն սեղանի հիմքերն են 9սմ և 18սմ, իսկ մեծ սրունքը՝ 15սմ: Գտեք սեղանի մակերեսը:

**354.** $ABC$ եռանկյան $CD$ բարձրության $D$ հիմքը գտնվում է $AB$ կողմի վրա, ընդ որում՝ $AD=BC$: Գտեք $AC$-ն, եթե $AB$=3, իսկ $CD=\sqrt{3}$ :

**355.** Զուգահեռագծի անկյունագծերից մեկը նաև նրա բարձրությունն է: Գտեք այդ բարձրությունը, եթե զուգահեռագծի պարագիծը 50սմ է, իսկ կից կողմերի տարբերությունը՝ 1սմ:

**356.** Պարզեք, թե արդյոք ուղղանկյու՞ն եռանկյուն է այն եռանկյունը, որի կողմերն արտահայտվում են հետևյալ թվերով. **ա)**6, 8, 10, **բ)**5, 6, 7, **գ)**9, 12, 15, **դ)**10, 24, 26, **ե)**3, 4, 6, **զ)**11, 9, 13, **է)**15, 20, 25: Պատասխանը հիմնավորեք:

**357.** Գտեք եռանկյան փոքր բարձրությունը, եթե նրա կողմերն են. **ա)**24սմ, 25սմ, 7սմ, **բ)**15սմ, 17սմ, 8սմ:

**358.** Եռանկյան երկու կողմերն են 30սմ և 25սմ, իսկ երրորդ կողմին տարված բարձրությունը՝ 24սմ: Գտեք երրորդ կողմը:

**359.** Որոշեք եռանկյան անկյունները, եթե նրա կողմերն են. **ա)**1, 1, $\sqrt{2}$, **բ)**1, $\sqrt{3}$, 2:

**360.** Հավասարասրուն սեղանի անկյունագիծը 25սմ է, իսկ բարձրությունը՝ 15սմ: Գտեք սեղանի մակերեսը:

**361.** Տրված է այնպիսի $ABC$ եռանկյուն, որ $AB=\sqrt{2}$, $BC=2$, իսկ $AC$ կողմի վրա նշված է $M$ կետն այնպես, որ $AM=1$, $BM=1$: Գտեք $\angle ABC$-ն:



## Գլուխ VIII-ի կրկնության հարցեր

1. Նկարագրեք, թե ինչպես են չափում բազմանկյունների մակերեսները:
2. Ձևակերպեք բազմանկյունների մակերեսների հիմնական հատկությունները:
3. Ձևակերպեք և ապացուցեք ուղղանկյան մակերեսի մասին թեորեմը:
4. Ձևակերպեք և ապացուցեք զուգահեռագծի մակերեսի հաշվման մասին թեորեմը:
5. Ձևակերպեք և ապացուցեք եռանկյան մակերեսի հաշվման մասին թեորեմը: Ինչպե՞ս հաշվել տրված էջերով ուղղանկյուն եռանկյան մակերեսը:
6. Ձևակերպեք և ապացուցեք թեորեմ՝ հավասար անկյուն ունեցող երկու եռանկյունների մակերեսների հարաբերության մասին:
7. Ձևակերպեք և ապացուցեք սեղանի մակերեսի հաշվման մասին թեորեմը:
8. Ինչպե՞ս հաշվել տրված կողմով խորանարդի մակերևույթի մակերեսը:
9. Պարզաբանեք, թե ինչպես են հաշվում ուղղանկյունանիստի լրիվ և կողմնային մակերևույթների մակերեսները:
10. Ձևակերպեք և ապացուցեք Պյութագորասի թեորեմը:
11. Ձևակերպեք և ապացուցեք Պյութագորասի թեորեմի հակադարձ թեորեմը:
12. Ո՞ր եռանկյուններն են կոչվում պյութագորյան. բերեք այդպիսի եռանկյան օրինակներ:

## Լրացուցիչ խնդիրներ

**362.** Ապացուցեք, որ հավասարասրուն ուղղանկյուն եռանկյան էջի վրա կառուցված քառակուսու մակերեսը կրկնակի մեծ է, քան ներքնաձիգին տարված բարձրության վրա կառուցված քառակուսու մակերեսը:

**363.** Հողամասի մակերեսը 27հա է: Այդ մակերեսն արտահայտեք. **ա)** քառակուսի մետրերով, **բ)** քառակուսի կիլոմետրերով:

**364.** Զուգահեռագծի բարձրությունները են 5սմ և 4սմ, իսկ պարագիծը՝ 42սմ: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**365.** Գտեք զուգահեռագծի պարագիծը, եթե նրա մակերեսը 24սմ$^2$ է, իսկ անկյունագծերի հատման կետի հեռավորությունը կողմերից հավասար է 2սմ և 3սմ:

**366.** Զուգահեռագծի փոքր կողմը 29սմ է: Անկյունագծերի հատման կետից մեծ կողմին տարված ուղղահայացը այդ կողմը տրոհում է 33սմ և 12սմ հատվածների: Գտեք զուգահեռագծի մակերեսը:

**367.** Ապացուցեք, որ $a$ և $b$ կողմեր ունեցող բոլոր եռանկյուններից ամենամեծ մակերեսն ունի այն եռանկյունը, որի այդ կողմերը ուղղահայաց են:

**368.** Քառակուսու գագաթով ինչպե՞ս տանել երկու ուղիղ, որ քառակուսին բաժանվի երեք՝ հավասար մակերես ունեցող պատկերների:

**369*.** Մի եռանկյան յուրաքանչյուր կողմը մեծ է մյուս եռանկյան ցանկացած կողմից: Արդյոք դրանից հետևու՞մ է, որ առաջին եռանկյան մակերեսը մեծ է երկրորդի մակերեսից:

**370*.** Ապացուցեք, որ հավասարասրուն եռանկյան հիմքի վրա գտնվող կետի՝ սրունքից ունեցած հեռավորությունների գումարը կախված չէ այդ կետի դիրքից:

**371.** Ապացուցեք, որ հավասարակողմ եռանկյան ներսում գտնվող կետի՝ կողմերից ունեցած հեռավորությունների գումարը կախված չէ այդ կետի դիրքից:

**372*.** $ABC$ եռանկյան $BC$ կողմի վրա վերցրած $D$ կետից տարված են մյուս երկու կողմերին զուգահեռ ուղիղներ, որոնք այդ $AB$ և $AC$ կողմերը հատում են, համապատասխանաբար, $E$ և $F$ կետերում: Ապացուցեք, որ $CDE$ և $BDF$ եռանկյունները ունեն հավասար մակերես:

**373.** $AB$ և $CD$ սրունքներով $ABCD$ սեղանի անկյունագծերը հատվում են $O$ կետում: **ա)** Համեմատեք $ABD$ և $ACD$ եռանկյունների մակերեսները: **բ)** Համեմատեք $ABO$ և $CDO$ եռանկյունների մակերեսները: **գ)** Ապացուցեք, որ $OA \cdot OB = OC \cdot OD$:

**374.** Շեղանկյան անկյունագծերը հավասար են 18մ և 24մ: Գտեք շեղանկյան պարագիծը և զուգահեռ կողմերի միջև հեռավորությունը:

**375.** Շեղանկյան մակերեսը 540սմ$^2$ է, իսկ անկյունագծերից մեկը՝ 4,5դմ: Գտեք անկյունագծերի հատման կետի հեռավորությունը շեղանկյան կողմերից:

**376.** Գտեք հավասարասրուն եռանկյան մակերեսը, եթե. **ա)** նրա սրունքը 20սմ է, իսկ հիմքին առընթեր անկյունը՝ $30^0$, **բ)** սրունքին տարված բարձրությունը 6սմ է և հիմքի հետ կազմում է $45^0$ անկյուն:

377. $ABC$ եռանկյան $BC$ կողմը 34սմ է: Այդ կողմի միջնակետից $AC$ ուղղին տարված $MN$ ուղղահայացը $AC$ կողմը տրոհում է երկու՝ $AN$=25սմ և $NC$=15սմ հատվածների: Գտեք $ABC$ եռանկյան մակերեսը:

378. Գտեք $ABCD$ քառանկյան մակերեսը, եթե $AB$=5սմ, $BC$=13սմ, $CD$=9սմ, $DA$=15սմ, $AC$=12սմ:

379. Գտեք հավասարասրուն սեղանի մակերեսը, եթե. **ա)** նրա փոքր հիմքը 18սմ է. բարձրությունը՝ 9սմ, իսկ սուր անկյունը՝ $45^0$, **բ)** նրա հիմքերը 16սմ և 30սմ են, իսկ անկյունագծերը փոխուղղահայաց են:

380. Գտեք հավասարասրուն սեղանի մակերեսը, եթե նրա բարձրությունը $h$ է, իսկ անկյունագծերը փոխուղղահայաց են:

381. Հավասարասրուն սեղանի անկյունագծերը փոխուղղահայաց են, իսկ նրա հիմքերի գումարը $2a$ է: Գտեք սեղանի մակերեսը:

382. Ապացուցեք, որ եթե $ABCD$ քառանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են, ապա $AD^2+BC^2=AB^2+CD^2$:

383. $AD$=17սմ և $BC$=5սմ հիմքերով և $AB$=10սմ սրունքով $ABCD$ հավասարասրուն սեղանի $B$ գագաթով տարված է մի ուղիղ, որը կիսում է $AC$ անկյունագիծը, իսկ $AD$ հիմքը հատում է $M$ կետում: Գտեք $BDM$ եռանկյան մակերեսը:

384. $a$ կողմով երկու քառակուսի ունեն մի ընդհանուր գագաթ, ընդ որում՝ նրանցից մեկի կողմը գտնվում է մյուսի անկյունագծի վրա: Գտեք այդ քառակուսիների ընդհանուր մասի մակերեսը:

385. Խորանարդի մի նիստի անկյունագիծը $a$ է: Գտեք այդ խորանարդի մակերևույթի մակերեսը:

386. Ուղղանկյունանիստի հիմքը $a$ կողմով քառակուսի է, իսկ կողմնային նիստերից յուրաքանչյուրի անկյունագիծը հիմքի կողի հետ կազմում է $60^0$ անկյուն: Գտեք ուղղանկյունանիստի կողմնային մակերևույթի մակերեսը:

387. Գտեք այն ուղղանկյունանիստի լրիվ մակերևույթի մակերեսը, որի նույն գագաթով անցնող կողերն ունեն $a$, $2a$ և $3a$ երկարություններ:

## Հաշվարկիչի օգնությամբ լուծելու խնդիրներ

388. Զուգահեռագծի հիմքը 11,735մ է, իսկ բարձրությունը հիմքից փոքր է 3,485մ-ով: Գտեք զուգահեռագծի մակերեսը պահանջվող ճշգրտությամբ. **ա)** մինչև 0,001$մ^2$, **բ)** մինչև 0,01$մ^2$, **գ)** մինչև 0,1$մ^2$:

389. $ABC$ եռանկյան մեջ $AB$=6,52սմ, $AC$=4,47սմ, իսկ $A_1B_1C_1$ եռանկյան մեջ $A_1B_1$=5,27սմ, $A_1C_1$=2,12սմ, ընդ որում՝ $\angle A=\angle A_1$: Գտեք

$ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների մակերեսների հարաբերությունը՝ մինչև 0,01 ճշգրտությամբ:

**390.** Սեղանի հիմքերը հավասար են 1,17դմ և 3,58դմ, իսկ բարձրությունը՝ 2,33դմ: Գտեք սեղանի մակերեսը՝ մինչև 0,01դմ$^2$ ճշգրտությամբ:

**391.** Ուղղանկյան մակերեսը 17,635սմ$^2$ է, իսկ կողմերից մեկը՝ 5,28սմ: Գտեք կից կողմը՝ տրված ճշգրտությամբ. **ա)** մինչև 0,01սմ, **բ)** մինչև 0,1սմ:

**392.** Եռանկյան երկու կողմերը հավասար են 5,62մ և 7,19մ, իսկ դրանցից առաջինին տարված բարձրությունը՝ 4,35մ: Գտեք երկրորդ կողմին տարված բարձրությունը՝ մինչև 1սմ ճշգրտությամբ:

**393*.** Ուղղանկյան $a$ և $b$ կողմերը չափվել են մինչև 0,1սմ ճշգրտությամբ: Օգտվելով այդ չափումներից՝ կարելի՞ է, արդյոք, ուղղանկյան $S$ մակերեսը հաշվել մինչև 1սմ$^2$ ճշգրտությամբ, եթե չափման արդյունքում ստացվել են. **ա)** $a$=2,5սմ, $b$=1,7սմ, **բ)** $a$=3,2սմ, $b$=2,5սմ, **գ)** $a$=5,6սմ, $b$=7,2սմ:

**394.** Ուղղանկյուն եռանկյան էջերը հավասար են 7,25սմ և 3,67սմ: Գտեք ներքնաձիգը՝ մինչև 0,01սմ ճշգրտությամբ:

**395.** Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգը 11,2դմ է, իսկ էջերից մեկը երեք անգամ փոքր է ներքնաձիգից: Գտեք մյուս էջը. **ա)** մինչև 1սմ ճշգրտությամբ, **բ)** մինչև 0,1սմ ճշգրտությամբ:

**396*.** Ուղղանկյուն եռանկյան $a$ և $b$ էջերը չափել են մինչև 0,1սմ ճշգրտությամբ և ստացել հետևյալ արդյունքները. $a$≈3,5սմ, $b$≈4,8սմ: Օգտվելով չափման այդ արդյունքներից՝ կարելի՞ է, արդյոք, ներքնաձիգը հաշվել. **ա)** մինչև 0,1սմ ճշգրտությամբ, **բ)** մինչև 0,2սմ ճշգրտությամբ:

ԳԼՈՒԽ IX

# ՆՄԱՆ ԵՌԱՆԿՅՈՒՆՆԵՐ



## § 1 ՆՄԱՆ ԵՌԱՆԿՅՈՒՆՆԵՐԻ ՍԱՀՄԱՆՈՒՄԸ

**44** **Համեմատական հատվածներ**: *AB և CD հատվածների հարաբերություն* կոչվում է նրանց երկարությունների հարաբերությունը, այսինքն՝ $\frac{AB}{CD}$-ն: Ասում են, որ *AB* և *CD* հատվածները *համեմատական են* $A_1B_1$ և $C_1D_1$ հատվածներին, եթե $\frac{AB}{A_1B_1}=\frac{CD}{C_1D_1}$:

Օրինակ, *AB* և *CD* հատվածները, որոնց երկարություններն են 2սմ և 1սմ, համեմատական են $A_1B_1$ և $C_1D_1$ հատվածներին, որոնց երկարություններն են 3սմ և 1,5սմ: Իսկապես, $\frac{AB}{A_1B_1}=\frac{CD}{C_1D_1}=\frac{2}{3}$:

Համեմատականության հասկացությունը[1] ներմուծվում է նաև շատ թվով հատվածների համար: Օրինակ, *AB*, *CD* և *EF* երեք հատվածները *համեմատական են* $A_1B_1$, $C_1D_1$, և $E_1F_1$ երեք հատվածներին, եթե $\frac{AB}{A_1B_1}=\frac{CD}{C_1D_1}=\frac{EF}{E_1F_1}$:

**45** **Նման եռանկյունների սահմանումը**: Հաճախ հանդիպում են այնպիսի առարկաներ, որոնց ձևը նույնն է, իսկ չափսերը տարբեր են: Օրինակ. ֆուտբոլի և թենիսի գնդակները, կլոր ափսեն և սկավառակը: Ընդունված է երկրաչափության մեջ միևնույն ձևն ունեցող պատկերներն անվանել *նման պատկերներ:* Նման են, օրինակ, ցանկացած երկու քառակուսին, երկու շրջանը և այլն: Ներմուծենք նման եռանկյունների հասկացությունը:

---

[1] Համեմատական հատվածներին անվանում են նաև **համամասնական** հատվածներ:




*Նմանակ կողմերն են՝ $AB$ և $A_1B_1$, $BC$ և $B_1C_1$, $CA$ և $C_1A_1$*

Նկ. 85

Դիցուք երկու՝ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների անկյունները համապատասխանաբար հավասար են. $\angle A=\angle A_1$, $\angle B=\angle B_1$, $\angle C=\angle C_1$: Այդ դեպքում հետևյալ կողմերը՝ $AB$-ն և $A_1B_1$-ը, $BC$-ն և $B_1C_1$-ը, $CA$-ն և $C_1A_1$-ը կոչվում են *նմանակ կողմեր* (նկ. 85):

Սահմանում: *Երկու եռանկյուններ կոչվում են նման, եթե նրանց անկյունները համապատասխանաբար հավասար են, և եռանկյուններից մեկի կողմերը համեմատական են մյուսի նմանակ կողմերին:*

Այլ խոսքով՝ երկու եռանկյուններ նման են, եթե կարելի է դրանք նշանակել $ABC$ և $A_1B_1C_1$ տառերով այնպես, որ

$$\angle A=\angle A_1,\ \angle B=\angle B_1,\ \angle C=\angle C_1, \qquad (1)$$

$$\frac{AB}{A_1B_1}=\frac{BC}{B_1C_1}=\frac{CA}{C_1A_1}=k: \qquad (2)$$

$k$ թիվը, որը հավասար է եռանկյունների նմանակ կողմերի հարաբերությանը, կոչվում է *նմանության գործակից:*

$ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների նմանությունը նշանակվում է այսպես. $\Delta ABC \sim \Delta A_1B_1C_1$: Նկար 85-ում պատկերված են նման եռանկյուններ:

Պարզվում է, որ եռանկյունների նմանությունը կարելի է հաստատել՝ ստուգելով (1) և (2) հավասարություններից միայն մի քանիսը: Այդ կարևոր հարցը մենք կուսումնասիրենք հաջորդ պարագրաֆում, որտեղ կդիտարկենք եռանկյունների նմանության երեք հայտանիշ:

## Հարցեր և խնդիրներ

**397.** Գտեք $AB$ և $CD$ հատվածների հարաբերությունը, եթե նրանց երկարությունները համապատասխանաբար հավասար են 15սմ և 20սմ: Արդյոք կփոխվի՞ այդ հարաբերությունը, եթե հատվածների երկարություններն արտահայտվեն միլիմետրերով:




Նկ. 86

**398.** Արդյոք համեմատակա՞ն են նկար 86-ում պատկերված հետևյալ հատվածները. **ա)** $AC$, $CD$ և $M_1M_2$, $MM_1$, **բ)** $AB$, $BC$, $CD$ և $MM_2$, $MM_1$, $M_1M_2$, **գ)** $AB$, $BD$ և $MM_1$, $M_1M_2$:

**399.** $AB$, $CD$ հատվածները համեմատական են $EF$, $MN$ հատվածներին: Գտեք $EF$-ը, եթե $AB$=5սմ, $CD$=80մմ, $MN$=1դմ:

**400.** $KP$ և $MN$ հատվածները $DO$ և $AL$ հատվածներին համեմատական են: Գտեք $AL$-ը, եթե $KP$=8դմ, $MN$=40սմ, $OD$=1մ:

**401.** $ABCD$ զուգահեռագծի անկյունագծերը հատվում են $O$ կետում, և $CD$ կողմը 10սմ է: Գտեք զուգահեռագծի պարագիծը, եթե $\frac{BC}{CD}=\frac{AC}{OC}$:

**402.** $ABC$ և $MNK$ եռանկյունները նման են: Նշեք եռանկյունների նմանակ կողմերը, եթե. **ա)** $\angle A=\angle M$, $\angle B=\angle N$, $\angle C=\angle K$, **բ)** $\angle A=\angle K$, $\angle C=\angle M$:

**403.** $ABC$ և $DEF$ եռանկյունները նման են: $\angle A=\angle D$, $\angle C=\angle F$, $EF$=14սմ, $DF$=20սմ, $BC$=21սմ: Գտեք $AC$-ն:

**404.** Նմա՞ն են, արդյոք, $ABC$ և $DEF$ եռանկյունները, եթե $\angle A=106^0$, $\angle B=34^0$, $\angle E=106^0$, $\angle F=40^0$, $AC$=4,4սմ, $AB$=5,2սմ, $BC$=7,6սմ, $DE$=15,6սմ, $DF$=22,8սմ, $EF$=13,2սմ:

**405.** $ABC$ և $KMN$ նման եռանկյունների մեջ $AB$ և $KM$, $BC$ և $MN$ կողմերը նմանակ են: Գտեք $KMN$ եռանկյան կողմերը, եթե $AB$=4սմ, $BC$=5սմ, $CA$=7սմ, $\frac{KM}{AB}=2,1$:

**406.** $KPF$ և $EMT$ եռանկյունները նման են, ընդ որում $\frac{KP}{ME}=\frac{PF}{MT}=\frac{KF}{ET}$, $\angle F=20^0$, $\angle E=40^0$: Գտեք այդ եռանկյունների մնացած անկյունները:

**407.** Նման եռանկյունների երկու նմանակ կողմերն են 2սմ և 5սմ: Առաջին եռանկյան երկու մյուս կողմերն են 3սմ և 4սմ: Գտեք երկրորդ եռանկյան պարագիծը:

**408.** Նման ուղղանկյուն եռանկյունների երկու նմանակ կողմերը հարաբերում են, ինչպես 2:3: Նրանցից առաջինի էջերն են 3սմ և 4սմ: Գտեք յուրաքանչյուր եռանկյան մակերեսը:

**409.** Նկար 87-ում $ABC$ և $DEC$ եռանկյունները նման են, ընդ որում՝ $DE$-ն և $AB$-ն զուգահեռ չեն, $AD$=6սմ, $DC$=10սմ, $BC$=14սմ: Գտեք $CE$-ն:



Նկ. 87

**410.** Հողամասի հատակագիծն ունի հավասարասրուն ուղղանկյուն եռանկյան ձև: Հատակագծում պատկերված եռանկյան մակերեսը 72սմ$^2$ է: Գտեք հողամասի մակերեսը, եթե նրա հատակագիծը կատարվել է 1:1000 մասշտաբով:

**411.** Հավասարասրուն ուղղանկյուն եռանկյան տեսք ունեցող այգու մակերեսը՝ 8հա է, իսկ նրա հատակագծում պատկերված եռանկյան մակերեսը՝ 200սմ$^2$: Ի՞նչ մասշտաբով է գծվել այգու հատակագիծը:

## § 2 ԵՌԱՆԿՅՈՒՆՆԵՐԻ ՆՄԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՅՏԱՆԻՇՆԵՐԸ

### (46) Եռանկյունների նմանության առաջին հայտանիշը:

Թ ե ո ր ե մ : *Եթե մի եռանկյան երկու անկյունները համապատասխանաբար հավասար են մյուս եռանկյան երկու անկյուններին, ապա այդպիսի եռանկյունները նման են:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիցուք՝ $ABC$-ն և $A_1B_1C_1$-ը երկու այնպիսի եռանկյուններ են, որոնցում $\angle A=\angle A_1$, $\angle B=\angle B_1$ (նկ. 88): Ապացուցենք, որ $\Delta ABC \sim \Delta A_1B_1C_1$:

Ըստ եռանկյան անկյունների գումարի մասին թեորեմի՝ $\angle C=180^0-\angle A-\angle B$, $\angle C_1=180^0-\angle A_1-\angle B_1$: Հետևաբար՝ $\angle C=\angle C_1$: Այսպիսով, $ABC$ եռանկյան անկյունները համապատասխանաբար հավասար են $A_1B_1C_1$ եռանկյան անկյուններին:



Նկ. 88

Ապացուցենք, որ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների նմանակ կողմերը համեմատական են: Քանի որ $\angle A=\angle A_1$ և $\angle C=\angle C_1$, ապա

$$\frac{S_{ABC}}{S_{A_1B_1C_1}}=\frac{AB\cdot AC}{A_1B_1\cdot A_1C_1} \quad \text{և} \quad \frac{S_{ABC}}{S_{A_1B_1C_1}}=\frac{CA\cdot CB}{C_1A_1\cdot C_1B_1}$$ (տես կետ 38-ը):

Այս հավասարություններից հետևում է. $\frac{AB}{A_1B_1}=\frac{BC}{B_1C_1}$: Նույն եղանակով, օգտվելով $\angle A=\angle A_1$ և $\angle B=\angle B_1$ հավասարություններից, ստանում ենք $\frac{BC}{B_1C_1}=\frac{CA}{C_1A_1}$:

Այսպիսով՝ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների նմանակ կողմերը համեմատական են: Թեորեմն ապացուցված է:

## 47 Եռանկյունների նմանության երկրորդ հայտանիշը:

Թ ե ո ր ե մ : *Եթե մի եռանկյան երկու կողմերը համեմատական են մյուս եռանկյան երկու կողմերին, իսկ այդ կողմերով կազմված անկյունները հավասար են, ապա այդպիսի եռանկյունները նման են:*

Ա պ ա ց ու ց ու մ : Դիտարկենք երկու՝ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյուններ, որոնցում $\frac{AB}{A_1B_1}=\frac{AC}{A_1C_1}$, $\angle A=\angle A_1$, (նկ. 89,ա):

Ապացուցենք, որ $\Delta ABC\sim\Delta A_1B_1C_1$: Դրա համար, նկատի ունենալով եռանկյունների նմանության առաջին հայտանիշը, բավական է ապացուցել, որ $\angle B=\angle B_1$:

Դիտարկենք այնպիսի $ABC_2$ եռանկյուն, որում $\angle 1=\angle A_1$, $\angle 2=\angle B_1$ (նկ. 89,բ): Ըստ եռանկյունների նմանության առաջին հայտանիշի՝ $ABC_2$ և $A_1B_1C_1$ եռանկյունները նման են: Ուրեմն՝ $\frac{AB}{A_1B_1}=\frac{AC_2}{A_1C_1}$: Մյուս կողմից, ըստ պայմանի՝ $\frac{AB}{A_1B_1}=\frac{AC}{A_1C_1}$: Այս երկու հավասարություններից ստանում ենք, որ $AC=AC_2$: Այսպիսով, $ABC$ և $ABC_2$ եռանկյունները հավասար են՝ ըստ երկու կողմի և նրանց կազմած անկյան ($AB$-ն ընդհանուր կողմ է, $AC=AC_2$ և $\angle A=\angle 1$, քանի որ $\angle A=\angle A_1$ և $\angle 1=\angle A_1$): Դրանից հետևում է, որ $\angle B=\angle 2$: Իսկ քանի որ $\angle 2=\angle B_1$, ապա $\angle B=\angle B_1$:

Թեորեմն ապացուցված է:




Նկ. 89

## (48) Եռանկյունների նմանության երրորդ հայտանիշը:

*Թ ե ո ր ե մ :* ***Եթե մի եռանկյան երեք կողմերը համեմատական են մյուս եռանկյան երեք կողմերին, ապա այդպիսի եռանկյունները նման են:***

Ա պ ա ց ու ց ու մ : Դիցուք՝ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների կողմերը համեմատական են. $\frac{AB}{A_1B_1}=\frac{BC}{B_1C_1}=\frac{CA}{C_1A_1}$: (1)

Ապացուցենք, որ $\Delta ABC \sim \Delta A_1B_1C_1$: Դրա համար, հաշվի առնելով եռանկյունների նմանության երկրորդ հայտանիշը, բավական է ապացուցել, որ $\angle A=\angle A_1$:

Դիտարկենք այնպիսի $ABC_2$ եռանկյուն, որում $\angle 1=\angle A_1$, $\angle 2=\angle B_1$ (նկ. 89,բ): Ըստ եռանկյունների նմանության առաջին հայտանիշի՝ $ABC_2$ և $A_1B_1C_1$ եռանկյունները նման են: Ուրեմն՝ $\frac{AB}{A_1B_1}=\frac{BC_2}{B_1C_1}=\frac{C_2A}{C_1A_1}$:

Համեմատելով այս և (1) հավասարությունները՝ ստանում ենք. $BC=BC_2$, $CA=C_2A$: Այսպիսով, $ABC$ և $ABC_2$ եռանկյունները հավասար են՝ ըստ երեք կողմի: Դրանից հետևում է, որ $\angle A=\angle 1$: Եվ քանի որ $\angle 1=\angle A_1$, ուրեմն $\angle A=\angle A_1$: Թեորեմն ապացուցված է:

## (49) Եռանկյունների նմանության մի քանի կիրառություններ:

*ա.Եռանկյան միջին գծի հատկությունը:* Եռանկյան միջին գիծ մենք անվանել ենք նրա երկու կողմերի միջնակետերը միացնող հատվածը: Ապացուցել ենք թեորեմ եռանկյան միջին գծի մասին. այն է՝ ***եռանկյան միջին գիծը զուգահեռ է նրա կողմերից մեկին և հավասար է այդ կողմի կեսին:***

Այժմ այս թեորեմն ապացուցենք մեկ այլ եղանակով՝ օգտվելով եռանկյունների նմանության հայտանիշներից:

Դիցուք՝ $MN$-ը $ABC$ եռանկյան միջին գիծն է (նկ. 90): Ապացուցենք, որ $MN \parallel AC$ և $MN=\frac{1}{2}AC$:

$BMN$ և $BAC$ եռանկյունները նման են՝ ըստ եռանկյունների նմանության երկրորդ հայտանիշի ($\angle B$-ն ընդհանուր է, $\frac{BM}{BA}=\frac{BN}{BC}=\frac{1}{2}$): Ուրեմն՝ $\angle 1=\angle 2$ և $\frac{MN}{AC}=\frac{1}{2}$: Առաջին՝ $\angle 1=\angle 2$, հավասարությունից բխում է, որ $MN \parallel AC$ (բացատրեք՝ ինչու), իսկ երկրորդ հավասարությունից՝ $MN=\frac{1}{2}AC$: Ապացուցումն ավարտված է:

*բ.եռանկյան միջնագծերի հատկությունը:* Մենք գիտենք, որ եռանկյան չորս նշանավոր կետերից մեկը նրա միջնագծերի հատման կետն է: Պարզվում է, որ եռանկյան միջնագծերն օժտված են մի կարևոր հատկությամբ. այն է՝ *եռանկյան միջնագծերը հատվում են մի կետում և այդ կետով տրոհվում 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից:*

Այս հատկությունն ապացուցելիս դարձյալ օգտվենք եռանկյունների նմանության հայտանիշներից:

Դիտարկենք կամայական $ABC$ եռանկյուն: $O$ տառով նշանակենք նրա $AA_1$ և $BB_1$ միջնագծերի հատման կետը և տանենք $A_1B_1$ միջին գիծը (նկ. 91): Քանի որ $A_1B_1$-ը զուգահեռ է $AB$ կողմին, ուրեմն $\angle 1=\angle 2$ և $\angle 3=\angle 4$: Հետևաբար՝ $AOB$ և $A_1OB_1$ եռանկյունները, ըստ երկու անկյան, նման են: Դա նշանակում է, որ այդ եռանկյունների կողմերը համեմատական են.

$$\frac{AO}{A_1O}=\frac{BO}{B_1O}=\frac{AB}{A_1B_1}:$$



Նկ. 90



Նկ. 91




Նկ. 92

Բայց քանի որ $AB=2A_1B_1$, ապա $AO=2A_1O$ և $BO=2B_1O$: Այսպիսով, $AA_1$ և $BB_1$ միջնագծերից յուրաքանչյուրը հատման $O$ կետով տրոհվում է 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից:

Նույն կերպ ապացուցվում է, որ $BB_1$ և $CC_1$ միջնագծերը նս հատման կետով տրոհվում են նույն 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից: Հետևաբար՝ այդ հատման կետը համընկնում է $O$ կետին:

Այսպիսով՝ $ABC$ եռանկյան բոլոր միջնագծերը հատվում են $O$ կետում և այդ կետով տրոհվում 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից:

Ապացուցումն ավարտված է:



## Հարցեր և խնդիրներ

**412.** Ըստ նկար 92-ի տվյալների՝ գտեք $x$-ը և $y$-ը:

**413.** $ABC$ և $DEF$ եռանկյունների մեջ $\angle A=\angle E$, $\angle C=\angle F$, $AC=6$, $EF=2$, $AB=3{,}3$: $DF$ կողմը $BC$ կողմից փոքր է 3,2-ով: Գտեք այդ եռանկյունների անհայտ կողմերը:

**414.** $AB$ և $CD$ հատվածները հատվում են $O$ կետում, $\frac{AO}{OB}=\frac{DO}{OC}$:

Ապացուցեք, որ $\angle CBO=\angle DAO$:

**415.** Ապացուցեք, որ նկար 93-ում պատկերված եռանկյունները նման են: Պարզաբանեք $AB$ և $DE$ ուղիղների փոխադարձ դասավորությունը:




Նկ. 93



**416.** $ABCD$ զուգահեռագծի $A$ գագաթով տարված է ուղիղ, որը հատում է $BC$ կողմը $E$ կետում, իսկ $DC$ կողմի շարունակությունը՝ $F$ կետում: Ապացուցեք, որ $\Delta ABE \sim \Delta EFC$:

**417.** $ABCD$ զուգահեռագծի $CD$ կողմի վրա նշված է $E$ կետը: $AE$ և $BC$ ուղիղները հատվում են $F$ կետում: Գտեք. **ա)** $EF$-ը և $FC$-ն, եթե $DE$=8սմ, $EC$=4սմ, $BC$=7սմ, $AE$=10սմ, **բ)** $DE$-ն և $EC$-ն, եթե $AB$=8սմ, $AD$=5սմ, $CF$=2սմ:

**418.** $AB$ և $CD$ հիմքերով $ABCD$ սեղանի անկյունագծերը հատվում են $O$ կետում: Ապացուցեք, որ $ABO$ և $CDO$ եռանկյունները նման են:

**419.** $AB$ և $CD$ հիմքերով $ABCD$ սեղանի անկյունագծերը հատվում են $O$ կետում: Գտեք. **ա)** $AB$-ն, եթե $OB$=4սմ, $OD$=10սմ, $DC$=25սմ, **բ)** $\frac{AO}{OC}$-ն և $\frac{BO}{OD}$-ն, եթե $AB=a$, $DC=b$, **գ)** $AO$-ն, եթե $AB$=9,6դմ, $DC$=24սմ, $AC$=15սմ:

**420.** Նմա՞ն են, արդյոք, հավասարասրուն եռանկյունները, եթե նրանք ունեն. **ա)** մեկական հավասար սուր անկյուն, **բ)** մեկական հավասար բութ անկյուն, **գ)** մեկական ուղիղ անկյուն: Պատասխանը հիմնավորեք:

**421.** $ABC$ եռանկյան $AB$ կողմը 15սմ է, իսկ $AC$ կողմը՝ 20սմ: $AB$ կողմի վրա անջատված է $AD$=8սմ, իսկ $AC$ կողմի վրա՝ $AE$=6սմ հատվածը: Նմա՞ն են, արդյոք, $ABC$ և $ADE$ եռանկյունները:

**422.** Նմա՞ն են, արդյոք, երկու ուղղանկյուն եռանկյունները, եթե դրանցից մեկն ունի $40^0$-ի անկյուն, իսկ մյուսը՝ **ա)** $50^0$-ին հավասար անկյուն, **բ)** $60^0$-ին հավասար անկյուն:

**423.** $ABC$ եռանկյան $AB$ կողմին զուգահեռ ուղիղը $AC$ կողմը հատում է $P$, իսկ $BC$ կողմը՝ $Q$ կետում: Ապացուցեք, որ $ABC$ և $PQC$ եռանկյունները նման են:

**424.** $ABC$ եռանկյան մեջ տարված է $AC$ կողմին զուգահեռ $DE$ հատվածը ($D$ կետը գտնվում է $AB$, իսկ $E$ կետը՝ $BC$ կողմի վրա): Գտեք $AD$-ն, եթե $AB$=16սմ, $AC$=20սմ, $DE$=15սմ:

**425.** $ABC$ եռանկյան $AC$ կողմին զուգահեռ ուղիղը $AB$ կողմը հատում է $D$, իսկ $BC$ կողմը՝ $E$ կետում: Գտեք $DE$ հատվածի երկարությունը, եթե **ա)** $AC$=20սմ, $AB$=17սմ և $BD$=11,9սմ, **բ)** $AC$=18դմ, $AB$=15դմ և $AD$=10դմ:

**426.** Սեղանի հիմքերը հավասար են 5սմ և 8սմ, իսկ սրունքները՝ 3,6սմ և 3,9սմ: Սրունքների շարունակությունները հատվում են $M$ կետում: Գտեք $M$ կետի հեռավորությունները փոքր հիմքի ծայրակետերից:

**427.** $ABC$ եռանկյան $AB$, $BC$ և $CA$ կողմերի վրա վերցված են, համապատասխանաբար, $M$, $N$ և $P$ կետերն այնպես, որ $MN \parallel AC$, $NP \parallel AB$: Գտեք $AMNP$ քառանկյան կողմերը, եթե. **ա)** $AB$=10սմ, $AC$=15սմ, $PN:MN$=2:3, **բ)** $AM=AP$, $AB=a$, $AC=b$:

**428.** $ABCD$ սեղանի անկյունագծերը հատվում են $O$ կետում: $BO$ և $OD$ հատվածները հարաբերում են, ինչպես 1:3: $BC$ և $AD$ հիմքերի գումարը 4,8սմ է: Գտեք սեղանի հիմքերը:

**429.** $O$ անկյան կողմերը հատվել են $AB$ և $CD$ զուգահեռ ուղիղներով: Ապացուցեք, որ $OA$ և $AC$ հատվածները համեմատական են $OB$ և $BD$ հատվածներին (նկ. 94):



Նկ. 94

Լուծում: $A$ կետով տանենք $BD$ ուղղին զուգահեռ $AC_1$ ուղիղը ($C_1$-ը այդ և $CD$ ուղիղների հատման կետն է): Այդ դեպքում, ըստ եռանկյունների նմանության առաջին հայտանիշի, $\Delta OAB \sim \Delta ACC_1$ ($\angle O=\angle CAC_1$, $\angle OAB=\angle C$): Հետևաբար՝ $\dfrac{OA}{AC}=\dfrac{OB}{AC_1}$: Քանի որ $AC_1=BD$ (բացատրեք, թե ինչու), ուրեմն՝ $\dfrac{OA}{OB}=\dfrac{AC}{BD}$, ինչը և պահանջվում է ապացուցել:

**430.** $A$ անկյան կողմերը հատվել են $BC$ և $DE$ զուգահեռ ուղիղներով. ընդ որում՝ $B$ և $D$ կետերը գտնվում են անկյան մի կողմի, իսկ $C$ և $E$ կետերը՝ մյուս կողմի վրա: Գտեք. **ա)** $AC$-ն, եթե $CE$=10սմ, $AD$=22սմ, $BD$=8սմ, **բ)** $BD$-ն և $DE$-ն, եթե $AB$=10սմ, $AC$=8սմ, $BC$=4սմ, $CE$=4սմ, **գ)** $BC$-ն, եթե $AB:BD$=2:1 և $DE$=12սմ:

**431.** $a$ և $b$ ուղիղները հատվել են $AA_1$, $BB_1$, $CC_1$ զուգահեռ ուղիղներով, ընդ որում՝ $A$, $B$ և $C$ կետերը գտնվում են $a$ ուղղի, իսկ $A_1$, $B_1$ և $C_1$ կետերը՝ $b$ ուղղի վրա: Ապացուցեք, որ $\dfrac{AB}{BC}=\dfrac{A_1B_1}{B_1C_1}$:

**432.** Տրված $A$ անկյան կողմերից մեկի վրա տեղադրված են $AB$=5սմ և $AC$=16սմ հատվածները: Այդ անկյան մյուս կողմի վրա տեղադրված են $AD$=8սմ և $AF$=10սմ հատվածները: Արդյոք նմա՞ն են $ACD$ և $AFB$ եռանկյունները: Պատասխանը հիմնավորեք:

**433.** Նմա՞ն են, արդյոք, $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունները, եթե. **ա)** $AB$=3սմ, $BC$=5սմ, $CA$=7սմ, $A_1B_1$=4,5սմ, $B_1C_1$=7,5սմ, $C_1A_1$=10,5սմ, **բ)** $AB$=1,7սմ, $BC$=3սմ, $CA$=4,2սմ, $A_1B_1$=34դմ, $B_1C_1$=60դմ, $C_1A_1$=84դմ:

**434.** Ապացուցեք, որ երկու հավասարակողմ եռանկյունները նման են:

**435.** $ABC$ եռանկյան $AM$ միջնագիծը 18սմ է: Գտեք միջնագծերի հատման $O$ կետի հեռավորությունը. **ա)**$A$ գագաթից, **բ)**$M$կետից, **գ)**$AM$ հատվածի միջնակետից:

**436.** Տրված եռանկյան միջնագծերն են 15սմ, 18սմ և 21սմ: Գտեք այն եռանկյան միջնագծերի երկարությունները, որի կողմերը տրված եռանկյան միջին գծերն են:

**437.** Ապացուցեք, որ կամայական ուռուցիկ քառանկյան կողմերի միջնակետերը զուգահեռագծի գագաթներ են:



## Գլուխ IX-ի կրկնության հարցեր

1. Ի՞նչն է կոչվում երկու հատվածների հարաբերություն:
2. Ո՞ր դեպքում են ասում, որ $AB$ և $CD$ հատվածները համեմատական են $A_1B_1$ և $C_1D_1$ հատվածներին:
3. Սահմանեք նման եռանկյունները:
4. Պարզաբանեք, թե ինչ է նմանության գործակիցը:
5. Վերհիշեք և ապացուցեք հավասար անկյուն ունեցող եռանկյունների մակերեսների հարաբերության մասին թեորեմը:
6. Ձևակերպեք և ապացուցեք եռանկյունների նմանության առաջին հայտանիշը:
7. Ձևակերպեք և ապացուցեք եռանկյունների նմանության երկրորդ հայտանիշը:
8. Ձևակերպեք և ապացուցեք եռանկյունների նմանության երրորդ հայտանիշը:
9. Ձևակերպեք և երկու եղանակով ապացուցեք եռանկյան միջին գծի մասին թեորեմը:
10. Ապացուցեք, որ եռանկյան միջնագծերը հատման կետով տրոհվում են 2:1 հարաբերությամբ՝ հաշված գագաթից:

## Լրացուցիչ խնդիրներ

**438.** $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունները նման են, $AB$=6սմ, $BC$=9սմ, $CA$=10սմ: $A_1B_1C_1$ եռանկյան ամենամեծ կողմը 7,5սմ է: Գտեք $A_1B_1C_1$ եռանկյան երկու մյուս կողմերը:

**439.** $ABCD$ սեղանի $AC$ անկյունագիծը սեղանը տրոհում է երկու նման եռանկյունների: Ապացուցեք, որ $AC^2=ab$, որտեղ $a$-ն և $b$-ն սեղանի հիմքերն են:

**440.** $ABC$ եռանկյան $AB$ կողմին զուգահեռ ուղիղը $AC$ կողմը տրոհում է 2:7 հարաբերությամբ՝ հաշված $A$ գագաթից: Գտեք հատումից առաջացած եռանկյան կողմերը, եթե $AB$=10սմ, $BC$=18սմ, $CA$=21,6սմ:

**441.** Ապացուցեք, որ $ABC$ եռանկյան $AM$ միջնագիծը կիսում է $BC$ կողմին զուգահեռ յուրաքանչյուր հատվածը, որի ծայրակետերը գտնվում են $AB$ և $AC$ կողմերի վրա:

**442.** Ապացուցեք, որ $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունները նման են, եթե. **ա)** $\frac{AB}{A_1B_1}=\frac{AC}{A_1C_1}=\frac{BM}{B_1M_1}$, որտեղ $BM$-ը և $B_1M_1$-ը եռանկյունների միջնագծերն են, **բ)** $\angle A=\angle A_1$, $\frac{AC}{A_1C_1}=\frac{BH}{B_1H_1}$, որտեղ $BH$-ը և $B_1H_1$-ը $ABC$ և $A_1B_1C_1$ եռանկյունների բարձրություններն են:

**443.** $ABC$ եռանկյան $AD$ միջնագծի վրա գտնվող $M$ կետով և $B$ գագաթով անցնող ուղիղը K կետում հատում է $AC$ կողմը: Գտեք $\frac{AK}{KC}$ հարաբերությունը, եթե. **ա)** $M$-ը $AD$ հատվածի միջնակետն է, **բ)** $\frac{AM}{MD}=\frac{1}{2}$:

**444.** Ապացուցեք, որ եռանկյան գագաթները հավասարահեռ են որևէ միջին գիծն ընդգրկող ուղղից:

**445.** Ապացուցեք, որ եթե եռանկյուններից մեկը նման է երկրորդին, իսկ այդ երկրորդ եռանկյունը նման է երրորդին, ապա առաջին և երրորդ եռանկյունները նման են:

**446.** Ապացուցեք, որ սեղանի անկյունագծերի միջնակետերը միացնող հատվածը զուգահեռ է նրա հիմքերին և հավասար է դրանց կիսատարբերությանը:

**447.** $ABC$ եռանկյան $AA_1$ և $BB_1$ միջնագծերը հատվում են $O$ կետում: Գտեք $ABC$ եռանկյան մակերեսը, եթե $ABO$ եռանկյան մակերեսը 96սմ$^2$ է:

**448.** $ABC$ եռանկյան $AC$ կողմի վրա վերցված է այնպիսի $M$ կետ, որ $\angle ABM=\angle ACB$: Հայտնի է, որ $AC$=9սմ, $MC$=8սմ: Գտեք $AB$ կողմը:

**449.** Ապացուցեք, որ եթե քառանկյան հանդիպակաց կողմերի միջնակետերը միացնող հատվածները փոխուղղահայաց են, ապա այդ քառանկյան անկյունագծերը հավասար են:

# Դժվարին խնդիրներ

**Քառանկյուններ**

**450.** Տրված է $A_1A_2A_3A_4A_5A_6$ վեցանկյունը, որի բոլոր անկյունները հավասար են: Ապացուցեք, որ $A_1A_2-A_4A_5=A_5A_6-A_2A_3=A_3A_4-A_6A_1$:

**451.** $a_1$, $a_2$, $a_3$, $a_4$, $a_5$ և $a_6$ դրական թվերը բավարարում են $a_1-a_4=a_5-a_2=a_3-a_6$ պայմաններին: Ապացուցեք, որ գոյություն ունի $A_1A_2A_3A_4A_5A_6$ ուռուցիկ վեցանկյուն, որի բոլոր անկյունները հավասար են, ընդ որում՝ $A_1A_2=a_1$, $A_2A_3=a_2$, $A_3A_4=a_3$, $A_4A_5=a_4$, $A_5A_6=a_5$, $A_6A_1=a_6$:

**452.** Ապացուցեք, որ կամայական ուռուցիկ քառանկյան ձև ունեցող միատեսակ սալիկներով կարելի է սալապատել հարթության ցանկացած մասը՝ լրիվությամբ ծածկելով այն:

**453.** Ապացուցեք, որ ուռուցիկ քառանկյան անկյունագծերը հատվում են:

**454.** Ապացուցեք, որ ցանկացած ուռուցիկ քառանկյան որևէ երկու հանդիպակաց գագաթները գտնվում են մյուս երկու գագաթով անցնող ուղղի տարբեր կողմերում:

**455.** $AC$ հիմքով $ABC$ հավասարասրուն եռանկյան մեջ տարված է $AD$ կիսորդը: $D$ կետով անցնում է $AD$-ին ուղղահայաց ուղիղ, որը $E$ կետում հատում է $AC$ ուղիղը: $B$ և $D$ կետերից $AC$ ուղղին տարված ուղղահայացների հիմքերն են $M$-ը և $K$-ն: Գտեք $MK$-ն, եթե $AE=a$:

**456.** Ապացուցեք, որ եռանկյան երեք միջնագծերի գումարը փոքր է պարագծից, բայց մեծ է կիսապարագծից:

**457.** Ուռուցիկ քառանկյան անկյունագծերը այն տրոհում են չորս այնպիսի եռանկյունների, որոնց պարագծերը հավասար են: Ապացուցեք, որ այդ քառանկյունը շեղանկյուն է:

**458.** Գտեք այն հատվածների միջնակետերի բազմությունը, որոնք տրված կետը միացնում են այդ կետով չանցնող՝ տրված ուղղի բոլոր կետերին:

**459.** Ապացուցեք, որ հավասարասրուն սեղանի հիմքերի միջնակետով անցնող ուղիղն ուղղահայաց է հիմքերին: Ձևակերպեք և ապացուցեք հակադարձ պնդումը:

**460.** Ուղղանկյան բոլոր անկյունների կիսորդները հատվելիս առաջանում է քառանկյուն: Ապացուցեք, որ այդ քառանկյունը քառակուսի է:

**461.** Զուգահեռագծի կողմերից յուրաքանչյուրի վրա, զուգահեռագծից դուրս կառուցված է քառակուսի, և նշված է դրա անկյունագծերի հատման կետը: Ապացուցեք, որ այդ բոլոր կետերը քառակուսու գագաթներ են:

**462.** $ABCD$ քառակուսու $CD$ կողմի վրա նշված է $M$ կետը: $BAM$ անկյան կիսորդը $K$ կետում հատում է $BC$ կողմը: Ապացուցեք, որ $AM=BK+DM$:

**463.** Նկար 95-ում պատկերված են երեք քառակուսի: Գտեք $\angle BAE+\angle CAE+\angle DAE$ գումարը:




Նկ. 95

**464.** $ABCD$ քառակուսու ներսում վերցված է $M$ կետն այնպես, որ $\angle MAB=60^0$, $\angle MCD=15^0$: Գտեք $\angle MBC$-ն:

**465.** $ABC$ եռանկյան կողմերի վրա, եռանկյունից դուրս, կառուցված են $BCDE$, $ACTM$, $BAHK$ քառակուսիները, իսկ հետո՝ $TCDQ$ և $EBKP$ զուգահեռագծերը: Ապացուցեք, որ $APQ$-ն հավասարասրուն ուղղանկյուն եռանկյուն է:

**466.** Կառուցեք հավասարասրուն սեղան՝ ըստ հիմքերի և անկյունագծերի:

**467.** Ապացուցեք, որ եթե եռանկյունն ունի՝ **ա)** համաչափության առանցք, ապա այն հավասարասրուն է, **բ)** համաչափության մեկից ավելի առանցքներ, ապա այն հավասարակողմ է:

## Մակերեսներ

**468.** $ABCD$ զուգահեռագծի ներսում գտնվող $M$ կետով տարված են նրա կողմերին զուգահեռ ուղիղներ, որոնք $AB$, $BC$, $CD$ և $DA$ կողմերը հատում են, համապատասխանաբար, $P$, $Q$, $R$ և $T$ կետերում: Ապացուցեք, որ եթե $M$ կետն ընկած է $AC$ անկյունագծի վրա, ապա $MPBQ$ և $MRDT$ զուգահեռագծերի մակերեսները հավասար են, և հակադարձը՝ եթե $MPBQ$ և $MRDT$ զուգահեռագծերի մակերեսները հավասար են, ապա $M$ կետն ընկած է $AC$ անկյունագծի վրա:

**469.** $ABCD$ զուգահեռագծի $AB$, $BC$, $CD$ և $DA$ կողմերի միջնակետերն են, համապատասխանաբար, $P$, $Q$, $R$ և $T$ կետերը: Ապացուցեք, որ $AQ$, $BR$, $CT$ և $DP$ ուղիղների հատումից առաջանում է զուգահեռագիծ: Գտեք այդ և $ABCD$ զուգահեռագծերի մակերեսների հարաբերությունը:

**470.** Ապացուցեք, որ սեղանի մակերեսը հավասար է սրունքներից մեկի և այն ուղղահայացի արտադրյալին, որը մյուս սրունքի միջնակետից տարված է առաջին սրունքն ընդգրկող ուղղին:

**471.** Սեղանի փոքր հիմքի ծայրակետերով տարված են երկու զուգահեռ ուղիղներ, որոնք հատում են մեծ հիմքը: Սեղանի անկյունա-

գծերը և այդ ուղիղները տրոհում են սեղանը՝ յոթ եռանկյան և մեկ հնգանկյան: Ապացուցեք, որ հնգանկյան մակերեսը հավասար է այն երեք եռանկյունների մակերեսների գումարին, որոնք հարակից են սրունքներին և փոքր հիմքին:

**472.** $ABCD$ զուգահեռագծի $AB$ կողմը $B$ կետից շարունակված է $BE$ հատվածով, իսկ $AD$ կողմը $D$ կետից՝ $DK$ հատվածով: $ED$ և $KB$ հատվածները հատվում են $O$ կետում: Ապացուցեք, որ $ABOD$ և $CEOK$ քառանկյունների մակերեսները հավասար են:

**473.** $ABCD$ ուռուցիկ քառանկյան $AB$ և $CD$ կողմերի $K$ և $M$ միջնակետերը $KD$, $KC$, $MA$ և $MB$ հատվածներով միացված են քառանկյան գագաթներին: Ապացուցեք, որ այդ հատվածների միջև ընդգրկված քառանկյան մակերեսը հավասար է այն երկու եռանկյունների մակերեսների գումարին, որոնք հարակից են $AD$ և $BC$ կողմերին:

**474.** $A$ կետն ընկած է $60^0$-ի անկյան ներսում: $a$-ն և $b$-ն $A$ կետի հեռավորություններն են անկյան կողմերից: Գտեք $A$ կետի հեռավորությունը անկյան գագաթից:

**475.** $ABC$ եռանկյան $AB$ կողմը $A$ կետից շարունակված է $AC$-ին հավասար $AD$ հատվածով: $BA$ և $BC$ ճառագայթների վրա վերցված են $K$ և $M$ կետերն այնպես, որ $BDM$ և $BCK$ եռանկյունների մակերեսները հավասար են: Գտեք $BKM$ անկյունը, եթե $\angle BAC=\alpha$:

**476.** $ABCD$ ուղղանկյան ներսում վերցված է $M$ կետը: Հայտնի է, որ $MB=a$, $MC=b$ և $MD=c$: Գտեք $MA$-ն:

**477.** Տարված է $ABC$ եռանկյան $BD$ բարձրությունը: $KA$ հատվածն ուղղահայաց է $AB$-ին և հավասար՝ $DC$-ին, իսկ $CM$ հատվածն ուղղահայաց է $BC$-ին և հավասար՝ $AD$-ին: Ապացուցեք, որ $MB$ և $KB$ հատվածները հավասար են:

**478.** $C$ ուղիղ անկյունով $ABC$ ուղղանկյուն եռանկյան ներսում վերցված է $O$ կետն այնպես, որ $S_{OAB}=S_{OAC}=S_{OBC}$: Ապացուցեք, որ $OA^2+OB^2=5\cdot OC^2$:

### Նման եռանկյուններ

**479.** Նկար 96-ում պատկերված է $ABCDE$ կանոնավոր հնգանկյունը, այսինքն՝ ուռուցիկ հնգանկյունը, որի բոլոր անկյունները հավասար են, և բոլոր կողմերը հավասար են: Ապացուցեք, որ. **ա)** $\Delta AED \sim \Delta AFE$, **բ)** $\frac{DA}{DF}=\frac{DF}{AF}$:

**480.** Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգը այնպիսի քառակուսու կողմ է, որը չի ծածկում այդ եռանկյունը: Գտեք այդ քառակուսու անկյունագծերի հատման կետի հեռավորությունը եռանկյան ուղիղ անկյան գագաթից, եթե նրա էջերի գումարը $a$ է:




Նկ. 96

**481.** $AOB$ անկյան ներքին տիրույթի $M$ կետից տարված են նրա $OA$ և $OB$ կողմերին ուղղահայացներ՝ $MP$-ն և $MQ$-ն: $P$ և $Q$ կետերից տարված են $OB$-ին և $OA$-ին ուղղահայացներ՝ համապատասխանաբար $PR$-ը և $QS$-ը: Ապացուցեք, որ $RS \perp OM$:

**482.** $ABCD$ ուռուցիկ քառանկյան անկյունագծերը հատվում են $P$ կետում: Հայտնի է, որ $\angle ADP = \frac{1}{2}\angle PDC$, $\angle ADP = \frac{2}{3}\angle PAD$ և $AD=BD=CD$:

**ա)** Գտեք քառանկյան բոլոր անկյունները: **բ)** Ապացուցեք, որ $AB^2 = BP \cdot BD$:

**483.** Ապացուցեք, որ եթե ուռուցիկ քառանկյան հանդիպակաց կողմերը զուգահեռ չեն, ապա նրանց կիսագումարը մեծ է մյուս երկու հանդիպակաց կողմերի միջնակետերը միացնող հատվածից:

**484.** Ապացուցեք, որ եթե ուռուցիկ քառանկյան հանդիպակաց կողմերի միջնակետերի հեռավորությունների գումարը հավասար է նրա կիսապարագծին, ապա այդ քառանկյունը զուգահեռագիծ է:

**485.** Ապացուցեք, որ եթե ուռուցիկ քառանկյան երկու հանդիպակաց կողմերի միջնակետերը միացնող հատվածը հավասար է մյուս երկու կողմերի կիսագումարին, ապա այդ քառանկյունը սեղան է կամ զուգահեռագիծ:

**486.** $EFG$ եռանկյան կողմերը համապատասխանաբար հավասար են $ABC$ եռանկյան միջնագծերին: Ապացուցեք, որ $\frac{S_{EFG}}{S_{ABC}} = \frac{3}{4}$:

**487.** Կառուցեք հավասարասրուն եռանկյուն՝ ըստ սրունքների կազմած անկյան և հիմքի ու նրան տարված բարձրության գումարի:

### Շրջանագիծ

**488.** Երկու շրջանագծեր ունեն միակ ընդհանուր $M$ կետ: Այդ կետով տարված են երկու հատողներ, որոնք շրջանագծերից մեկը հատում են $A$ և $A_1$ կետերում, իսկ մյուսը՝ $B$ և $B_1$ կետերում: Ապացուցեք, որ $AA_1 \parallel BB_1$:

**489.** $B_1$ և $C_1$ կետերը $AB$ և $AC$ աղեղների միջնակետերն են (նկ. 97): Ապացուցեք, որ $AM=AN$:



Նկ. 97

**490.** $O_1$ և $O_2$ կենտրոններով երկու շրջանագծերի հատման $A$ կետով տարված է ուղիղ, որը շրջանագծերից մեկը հատում է $B$, իսկ մյուսը՝ $C$ կետում: Ապացուցեք, որ $BC$ հատվածը մեծագույնն կլինի այն դեպքում, երբ այն զուգահեռ լինի $O_1O_2$ ուղղին:

**491.** $AB$ հատվածը $O$ կենտրոնով շրջանագծի տրամագիծ է: Շրջանագծի յուրաքանչյուր $OM$ շառավիղի վրա $O$ կետից տեղադրված է հատված, որի երկարությունը հավասար է $M$ ծայրակետի և $AB$ ուղղի միջև եղած հեռավորությանը: Գտեք այդ ձևով կառուցված հատվածների ծայրակետերի բազմությունը:

**492.** Դիցուք՝ $ABC$ եռանկյան բարձրություններն ընդգրկող ուղիղների հատման կետը $H$-ն է, իսկ $A$-ը, $B$-ը, $C$-ը կետեր են, որոնք $BC$, $CA$, $AB$ ուղիղների նկատմամբ համաչափ են $H$ կետին: Ապացուցեք, որ $A$, $B$, $C$ կետերը գտնվում են $ABC$ եռանկյան արտագծյալ շրջանագծի վրա:

**493.** $ABC$ եռանկյան $B$ գագաթից տարված են $BH$ բարձրությունը և $B$ անկյան կիսորդը: Այդ կիսորդը $E$ կետում հատում է եռանկյան արտագծյալ շրջանագիծը, որի կենտրոնը $O$-ն է: Ապացուցեք, որ $BE$ ճառագայթը $OBH$ անկյան կիսորդն է:

**494.** $ABC$ հավասարակողմ եռանկյան արտագծյալ շրջանագծի կամայական $X$ կետը հատվածներով միացված է եռանկյան գագաթներին: Ապացուցեք, որ $AX$, $BX$ և $CX$ հատվածներից մեկը հավասար է մյուս երկուսի գումարին:

**495.** Ապացուցեք, որ եթե ներգծյալ քառանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են, ապա քառանկյան հանդիպակաց կողմերի քառակուսիների գումարը հավասար է արտագծված շրջանագծի տրամագծի քառակուսուն:

**496.** Կառուցեք տրված երկու շրջանագծերի ընդհանուր շոշափողը:

**497.** Տրված են $O$ կենտրոնով շրջանագիծը, $M$ կետը և $P_1Q_1$, $P_2Q_2$ հատվածները: Կառուցեք այնպիսի $P$ ուղիղ, որ շրջանագիծը նրանից անջատի $P_1Q_1$-ին հավասար լար, և $M$ կետի հեռավորությունը $P$ ուղղից հավասար լինի $P_2Q_2$-ին:

**498.** Շրջանագծի ներսում տրված է մի կետ: Կառուցեք այդ կետով անցնող այն լարը, որն այդ կետով անցնող բոլոր լարերից փոքրագույնն է:

# Պատասխաններ և ցուցումներ

## ԳԼՈՒԽ VI

**2.** ա) $540^0$, բ) $720^0$, գ) $1440^0$: **3.** $90^0$: **4.** $108^0$: **5.** 5: **6.** $100^0$, $100^0$, $100^0$, $60^0$: **7.** $105^0$, $95^0$, $85^0$, $75^0$: **8.** $30^0$, $60^0$, $120^0$, $150^0$: **9.** $40^0$, $60^0$, $80^0$, $120^0$, $240^0$: **10** ա) Չորս, բ) երեք, գ) վեց, դ) հինգ: **11.** 23մմ, 20մմ, 19մմ, 18մմ: **12.** 15սմ, 7սմ, 23սմ, 21սմ: **13.** $75^0$: **16.** ա) 10,5սմ, 13,5սմ, բ) 8,5սմ, 15,5սմ, գ) 8սմ, 16սմ: **17.** 13սմ, 12սմ, 13սմ, 12սմ: **18.** $40^0$, $140^0$, $40^0$, $140^0$: **19.** 10սմ: **22.** $60^0$, $120^0$, $60^0$, $120^0$: **23.** $50^0$, $130^0$, $50^0$, $130^0$: **24.** 78սմ: **25.** 56սմ կամ 70սմ: **26.** ա) $\angle B=\angle D=96^0$, $\angle C=84^0$, բ) $\angle A=\angle C=117^030$, $\angle B=\angle D=62^030$, գ) $\angle A=\angle C=71^0$, $\angle B=\angle D=109^0$, դ) $\angle A=\angle C=120^0$, $\angle B=\angle D=60$, ե) $\angle A=\angle C=53^0$, $\angle B=\angle D=127^0$: **27.** MN=PQ=6սմ, NP=QM=8սմ, $\angle M=\angle P=60^0$, $\angle N=\angle Q=120^0$: **29.** Ցուցում: Սկզբում ապացուցել, որ BK=DM: **30.** Ցուցում: Օգտվել կետ 5-ի $2^0$ հայտանիշից: **31.** Ցուցում: Օգտվել կետ 5-ի $3^0$ հայտանիշից: **32.** Ցուցում: Օգտվել կետ 5-ի $2^0$ հայտանիշից: **33.** 12սմ: **36.** 6մ, 8մ: **37.** m+n: **40.** 2մ: **41.** $70^0$, $110^0$, $110^0$, $70^0$: **42.** 8սմ, 12սմ: **43.** 16սմ: **44.** 24սմ, 30սմ: **45.** 3սմ, 4սմ: **46.** 2սմ: **49.** 20սմ: **50** ա) 6սմ, բ) 5սմ: **54.** 20սմ, 20սմ: **55.** ա) 198,1սմ, կամ 122,6սմ, բ) 23,4դմ կամ 19,8դմ: **57.** 18սմ: **59.** $40^0$: **60.** $75^0$: **61.** 40սմ: **62.** 60սմ: **63.** ա) $60^0$ և $120^0$, բ) $30^0$ և $60^0$: **64.** 42սմ: **65.** $22^030$ և $67^030$ : **67.** 10սմ: **68.** 10սմ: **69.** 40սմ: **70.** 10սմ: **72.** ա) Ոչ, բ) ոչ, գ) այո: **74.** ա) Երկու, բ) անվերջ բազմությամբ. այդ ուղղին ուղղահայաց ցանկացած ուղիղ, ինչպես նաև այդ ուղիղը, գ) մեկ: **78.** ա) Այո, բ) ոչ, գ) այո, դ) այո: **83.** Երեք: **91.** 18, 12, 8: **92.** ա) Ոչ, բ) ոչ, գ) այո: **93.** ա) Այո, բ) այո, գ) այո: **94.** ա) Վեցանկյուն բազմանկյուն, բ) ութանկյուն բազմանկյուն, գ) յոթանկյուն բազմանկյուն: **95.** 4սմ: **96.** 96սմ: **97.** 6: **98.** 8: 2-ը վեցանկյուն բուրգ, 6-ը քառանկյուն բուրգ: **99.** 16, 9, 9: **100.** ա) Տասներկու անկյուն բուրգ, բ) իննանկյուն բուրգ, գ) վեցանկյուն բուրգ: **101.** ա) Այո, բ) ոչ: **102.** 16սմ: **105.** Հատում է CD կողմը, 9սմ և 5սմ: **106.** 3սմ, 4սմ, 3սմ: **108.** Ցուցում: Օգտվել 52 խնդրից: **109.** Ցուցում: Օգտվել ուռուցիկ քառանկյան անկյունների գումարի վերաբերյալ թեորեմից և 15,բ խնդրից: **111.** Ցուցում. M կետով տանել BK ուղղին զուգահեռ ուղիղ և օգտվել Թալեսի թեորեմից: **112.** Ցուցում: Օգտվել Թալեսի թեորեմից: **113.** Ցուցում: Սկզբում ապացուցել, որ $\Delta BKD=\Delta BMD$: **115.** Ցուցում: Օգտվել եռանկյան միջին գծի հատկությունից: **116.** 36,8սմ: Ցուցում: Նկատել, որ AMC և ANC եռանկյունները հավասարասրուն են: **117.** Ցուցում: Սկզբում ապացուցել, որ $\Delta ABH=\Delta AMH$: **118.** 8սմ: **119.** Ցուցում: Փոքր հիմքի միջնակետով տանել սրունքներին զուգահեռներ

և օգտվել «Ուղղանկյուն եռանկյան ներքնաձիգին տարված միջնագիծը հավասար է ներքնաձիգի կեսին» պնդումից: **121.** Անվերջ բազմությամբ: **122*.** *Ցուցում:* Դիցուք՝ a-ն և b-ն պատկերի համաչափության երկու փոխուղղահայաց առանցքներն են, և O-ն՝ դրանց հատման կետը: Սկզբում ապացուցել, որ եթե M և $M_1$ կետերը համաչափ են a ուղղի նկատմամբ, իսկ $M_1$ և $M_2$ կետերը՝ b ուղղի նկատմամբ, ապա $M_1$-ը և $M_2$-ը համաչափ են O կետի նկատմամբ:

## ԳԼՈՒԽ VII

**131.** $90^0$: **132.** 8սմ: **134.** $30^0$: **138.** ա) r=5, բ) r<5, գ) r>5: **139.** ա) 3, բ)3-ից մեծ: **140.** 29սմ: **142.** $30^0$: **143.** $30^0$, $30^0$, $120^0$: **144.** *Ցուցում:* Սկզբում ապացուցել, որ $\angle ADC=30^0$: **145.** $\angle A=30^0$, $\angle O=60^0$, $\angle B=90^0$: **146.** $60^0$: **147.** $60^0$: **152.** ա) *Ցուցում:* ա)Սկզբում կառուցեք շրջանագծի կենտրոնով անցնող և տրված ուղղին ուղղահայաց ուղիղ: բ)O կենտրոնով տանել ուղղին զուգահեռ: **154.** ա) 16սմ, բ) 32սմ: **156.** 12սմ: **158.** ա) $64^0$, բ) $175^0$, գ) $34^0$, դ) $105^0$: **159.** $60^0$ և $30^0$ կամ $140^0$ և $110^0$: **160.** $101^0$ կամ $36^0$: **162.** $50^0$: **163.** $73^0$: **164.** $98^0$: **165.** 12սմ: **166.** 10սմ: **167.** $100^0$: **168.** $20^0$: **169.** $62^0$: **170.** $30^0$, $60^0$, $90^0$: **171.** $20^020$, $34^050$ : **173.** $36^0$: **174.** $44^0$: **176.** *Ցուցում:* Օգտվել 175 խնդրից: **180.** *Ցուցում:* Նախ ապացուցել, որ AOB եռանկյունը հավասարասրուն է: **182.** 10սմ: **184.** ա) $46^0$ և $46^0$, բ) $21^0$ և $21^0$: **185.** ա) AD=3,5սմ, CD=5սմ, բ) AC=14,6սմ: **187.** 9սմ: **189.** *Ցուցում:* Օգտվել հակասող ենթադրության մեթոդից: **193.** *Ցուցում:* Օգտվել հատվածի միջնուղղահայացի վերաբերյալ թեորեմից: **194.** *Ցուցում:* Հաշվի առնել, որ որոնելի կետը գտնվում է տրված անկյան կիսորդի և տրված հատվածի միջնուղղահայացի վրա: **199.** 20սմ: **200.** 2սմ: **202.** 2սմ: **203.** 3սմ: **204.** $130^0$: **205.** a: **206.** 20սմ: **207.** 32սմ: **208.** 4սմ, 16սմ, 10սմ, 10սմ: **209.** 15սմ: **2 10.** 2սմ: **214.** ա) $\angle A=67^0$, $\angle B=23^0$, $\angle C=90^0$, բ) $\angle A=55^0$, $\angle B=35^0$, $\angle C=90^0$: **215.** $\angle A=51^0$, $\angle B=\angle C=64^030$ : **219.** *Ցուցում:* Օգտվել 47 ա) խնդրից: **220.** $\angle C=76^0$, $\angle D=109^0$: **221.** ա) Ոչ, բ) այո, գ) այո, դ) այո: **231.** 2:1: **232.** 5սմ: **233.** 12սմ: **236.** 30սմ: **237.** 6սմ, 12սմ: **238.** 10սմ: **241.** Ջուրը լցված է կեսի չափով: **242.** 6սմ: **243.** ա) Ընդհանուր կետ չունեն, բ) ունեն ընդհանուր կետեր, գ) ունեն միայն մեկ ընդհանուր կետ, դ) ունեն ընդհանուր կետեր, ե) ընդհանուր կետ չունեն: **245.** *Ցուցում:* Օգտվել 176 խնդրից: **246.** *Ցուցում:* Նկատի ունենալ, որ BM=MX և CN=NX: **247*.** Դիցուք՝ K-ն M կետով անցնող ընդհանուր շոշափողի և AB ուղղի հատման կետն է: Սկզբում ապացուցել, որ KA=KM=KB: **253.** Ոչ: **257.** *Ցուցում:* Օգտագործել այն կողմի միջնուղղահայացը, որին տարված է միջնագիծը: **259.** *Ցուցում:*

Օգտվել ներգծված քառանկյան անկյունների հատկությունից: **261.** Ցուցում: Օգտվել 260 խնդրից: **262.** Ցուցում: Օգտվել 260 խնդրից: **263.** Ցուցում: Սկզբում ապացուցել, որ MHBC քառանկյանը կարելի է արտագծել շրջանագիծ: **264.** Ցուցում: Օգտվել 254 խնդրից: **265.** Ցուցում: Նախ կառուցել AB հատվածին միջնուղղահայաց և ապա A կետով a ուղղին ուղղահայաց:

## ԳԼՈՒԽ VIII

**269.** Ցուցում: Դիցուք՝ O-ն AM և BC հատվածների հատման կետն է: Սկզբում ապացուցել ABO և MCO եռանկյունների հավասարությունը: **270.** Ցուցում: BC ուղղին տանել EF ուղղահայացը: Սկզբում ապացուցել ABM և EFM, DCN և EFN եռանկյունների հավասարությունը: **271.** ա) 1,44սմ$^2$, բ) $\frac{9}{16}$դմ$^2$, գ) $11\frac{1}{9}$մ$^2$: **272.** ա) 4սմ, բ) 5դմ, գ) 1,5մ: **273.** ա) 2400մմ$^2$, բ) 0,24դմ$^2$: **274.** ա) Կմեծանա 9 անգամ, բ) կփոքրանա 4 անգամ: **275.** 6 անգամ: **276.** ա) 27,2սմ$^2$, բ) $\frac{4}{5}$սմ$^2$, գ) 21,375սմ, դ) 27սմ: **277.** ա) Կմեծանա երկու անգամ, բ) կմեծանա չորս անգամ, գ) չի փոփոխվի: **278.** 48սմ$^2$: **279.** 40սմ: **280.** $1\frac{19}{45}$սմ: **281.** 100սմ$^2$: **282.** 60սմ$^2$: **283.** 98սմ$^2$: **284.** 2200: **285.** 360: **286.** Քառակուսու ձև ունեցող հողամասի մակերեսը մեծ է 25մ$^2$: **287.** ա) 180սմ$^2$, բ) 4սմ, գ) 18սմ, դ) a=42: **288.** 156սմ$^2$: **289.** 78սմ$^2$: **290.** 18սմ$^2$: **291.** 56,7սմ$^2$: **292.** ա) 10սմ, բ) 4սմ, գ) 12սմ և 9սմ: **293.** 12սմ$^2$: **294.** $30^0$, $150^0$, $30^0$, $150^0$: **295.** $45^0$, $135^0$, $45^0$, $135^0$: **296.** 20սմ$^2$: **297.** 77սմ$^2$: **298.** 80սմ: **299.** 115,52սմ$^2$: **300.** Քառակուսու մակերեսը մեծ է: **301.** Ուղղանկյան մակերեսը մեծ է: **302.** ա) 38,5սմ$^2$, բ) 5,4սմ, գ) 4սմ: **303.** 8սմ: **304.** 5,625սմ: **305.** ա) 22սմ$^2$, բ) 1,8դմ$^2$: **306.** 98սմ$^2$: **307.** 1:2 : **308.** 8սմ$^2$: **309.** 25սմ$^2$: **310.** 24սմ$^2$: **311.** Եռանկյունների մակերեսները հավասար են: **312.** 3:2 : **313.** 6:1 : **314.** Ցուցում: Սկզբում BC կողմը բաժանել չորս հավասար մասերի: **315.** ա) 224սմ$^2$, բ) 4,6դմ$^2$: Ցուցում: Հաշվի առնել, որ շեղանկյան անկյունագծերը փոխուղղահայաց են: **316.** 54մ: **318.** ա) 133սմ$^2$, բ) 24սմ$^2$, գ) 72սմ$^2$: **319.** 54սմ$^2$: **320.** 5սմ: **321.** 4սմ: **322.** 54սմ$^2$: **323.** 4,76սմ$^2$: **324.** 24սմ$^2$: **325.** ա) 26,46սմ$^2$, բ) 73,5մ$^2$: **326.** ա) 4սմ$^2$, բ) 25դմ$^2$: **327.** ա) 16 անգամ, բ) 4 անգամ: **328.** Մեծացավ: **329.** ա) 42սմ$^2$, բ) 208սմ$^2$, գ) 292սմ$^2$: **330.** 132սմ$^2$, 204սմ$^2$: **331.** 3,5սմ, 240սմ$^2$: **332.** 48սմ$^2$: **333.** 10սմ: **335.** ա) 24մ$^2$, 60մ$^2$: **336.** 6 փաթեթ: **337.** 8000: **338.** 7սմx42սմ, կամ 14սմx21սմ: **339.** ա) 10, բ) 13,

գ) $\frac{5}{7}$, դ) 2: **340.** ա) 5, բ) 12, գ) 1, դ) $2\sqrt{3}$: **341.** $\frac{c\sqrt{3}}{2}$: **342.** ա) 12, բ) 2, գ) 8: **343.** 15սմ: **344.** ա) $3\sqrt{3}$ սմ, բ) $\frac{8\sqrt{3}}{3}$ սմ: **345.** $10\sqrt{2}$ սմ: **346.** ա) $4\sqrt{3}$ սմ$^2$, բ) $0,36\sqrt{3}$ սմ$^2$, գ) $2\sqrt{3}$ սմ$^2$: **347.** ա) 10սմ և 48սմ$^2$, բ) $6\sqrt{3}$ սմ և $27\sqrt{3}$ սմ$^2$, գ) $7\sqrt{2}$ սմ և 49սմ$^2$: **348.** ա) $4\frac{8}{13}$, բ) 9,6: **349.** 8սմ, 9,6սմ, 9,6սմ: **350.** 13սմ և 120սմ$^2$: **351.** 96սմ$^2$ և 16սմ: **352.** ա) 180սմ$^2$, բ) $48\sqrt{3}$ սմ$^2$, գ) 135սմ$^2$: **353.** 162սմ$^2$: **354.** $\sqrt{7}$ : **355.** 5սմ: **356.** ա) Այո, բ) ոչ, գ) այո, դ) այո, ե) ոչ, զ) ոչ, է) այո: **357.** ա) 6,72սմ, բ) $7\frac{1}{17}$ սմ: **358.** 25սմ: **359.** ա) 45$^0$, 45$^0$, 90$^0$, բ) 30$^0$, 60$^0$, 90$^0$: **360.** 300սմ$^2$: **361.** 105$^0$: **363.** ա) 270000մ$^2$, բ) 0,27կմ$^2$: **364.** $46\frac{2}{3}$ սմ$^2$: **365.** 20սմ: **366.** 900սմ$^2$: **367.** *Ցուցում:* Օգտվել այն բանից, որ ուղղահայացը փոքր է թեքից: **368.** *Ցուցում:* ABCD քառակուսու BC և DC կողմերի վրա վերցնել M և N կետերն այնպես, որ BM=$\frac{2}{3}$BC, DN=$\frac{2}{3}$DC, և տանել AM և AN ուղիղները: **369.** Ոչ: *Ցուցում:* Համեմատել, օրինակ՝ 13, 13, 24 և 12, 12, 12 կողմերով եռանկյունների մակերեսները: **370*.** *Ցուցում:* Միացնել հիմքի վրա գտնվող կետը հիմքին հանդիպակաց գագաթին, և օգտվել այն բանից, որ ստացված երկու եռանկյունների մակերեսների գումարը հավասար է տրված եռանկյան մակերեսին: **371.** *Ցուցում:* Խնդիրը լուծվում է 370* խնդրին համանման: **372.** *Ցուցում:* Ապացուցել, որ յուրաքանչյուր եռանկյան մակերեսը հավասար է AEDF զուգահեռագծի մակերեսի կեսին: **373.** ա) և բ) եռանկյունների մակերեսները հավասար են: գ) *Ցուցում:* Օգտվել բ) խնդրից և 38 կետի 2-րդ թեորեմից: **374.** 60մ, 14,4մ: **375.** $10\frac{10}{17}$ սմ: **376.** ա) $100\sqrt{3}$ սմ$^2$, բ) 18սմ$^2$: **377.** 320սմ$^2$: **378.** 84սմ$^2$: *Ցուցում:* Սկզբում ապացուցել, որ ABC-ն և ACD-ն ուղղանկյուն եռանկյուններ են: **379.** ա) 243սմ$^2$, բ) 529սմ$^2$: **380.** $h^2$: **381.** $a^2$: **383.** 48սմ$^2$: **384.** $(\sqrt{2}-1)a^2$: **385.** $3a^2$: **386.** $4\sqrt{3}a^2$: **387.** $22a^2$: **389.** 2,61: **390.** 5,53դմ$^2$: **391.** ա) 3,34սմ, բ) 3,3սմ: **392.** 3,40մ: **393*.** ա) Այո, S=(4±1)սմ$^2$, բ) այո, S=(8±1)սմ$^2$, գ) ոչ, քանի որ 39,05սմ$^2$≤S≤41,61սմ$^2$: **394.** 8,13սմ: **395.** ա) 106սմ, բ)105,6սմ: **396*.** ա) Ոչ, քանի որ 5,80սմ≤c≤6,08սմ, բ) այո, c=(5,9±0,2)սմ:

**397.** $\frac{3}{4}$, ոչ: **398.** ա) Այո, բ) այո, գ) ոչ: **399.** 6,25սմ: **400.** 5դմ: **401.** 60սմ: **403.** 30սմ: **404.** Այո: **405.** 8,4սմ, 10,5սմ, 14,7սմ: **406.** $\angle T=20^0$, $\angle K=40^0$, $\angle P=\angle M=120^0$: **407.** 22,5սմ: **408.** 6սմ$^2$, 13,5սմ$^2$: **409.** $11\frac{3}{7}$սմ: **412.** x=9, y=21: **413.** BC=4,8, DF=1,6, DE=1,1: **415.** AB և DE ուղիղները զուգահեռ են: **417.** ա) EF=5սմ, FC=3,5սմ, բ) DE=$5\frac{5}{7}$սմ, EC=$2\frac{2}{7}$սմ: **419.** ա) 10սմ, բ) $\frac{AO}{OC}=\frac{BO}{OD}=\frac{a}{b}$, գ) 12սմ: **420.** ա) Ոչ միշտ, բ) այո, գ) այո: **422.** ա) Այո, բ) ոչ: **424.** 4սմ: **425.** ա) 14սմ, բ) 6դմ: **426.** 6սմ և 6,5սմ: **427.** ա) 5սմ, 5սմ, 7,5սմ, 7,5սմ, բ) բոլոր չորս կողմերը հավասար են $\frac{ab}{a+b}$: **428.** BC=1,2սմ, AD=3,6սմ: **430.** ա) 17,5սմ, բ) BD=5սմ, DE=6սմ, գ) 8սմ: **431.** *Ցուցում:* Եթե a և b ուղիղները զուգահեռ չեն, ապա A կետով տանել b ուղղին զուգահեռ ուղիղ: **432.** Այո: **433.** ա) Այո, բ) այո: **435.** ա) 12սմ, բ) 6սմ, գ) 3սմ: **436.** 7,5սմ, 9սմ, 10,5սմ: **438.** $A_1B_1$=4,5սմ, $B_1C_1$=6,75սմ: **440.** 16,8սմ, 14սմ, $7\frac{7}{9}$սմ: **442.** *Ցուցում:* Սկզբում ապացուցել, որ ա) $\Delta ABM \sim \Delta A_1B_1M_1$, բ) $\Delta ABH \sim \Delta A_1B_1H_1$: **447.** 288սմ$^2$: **448.** 3սմ:

## ԴԺՎԱՐԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ

### Քառանկյուններ

**450.** *Ցուցում:* Մեկ ընդ մեջ վեցանկյան կողմերը շարունակելով` ստանալ հավասարակողմ եռանկյուն: **451.** *Ցուցում:* Սկզբում ապացուցել, որ $a_1+a_2+a_3=a_3+a_4+a_5=a_5+a_6+a_1$: Այնուհետև կառուցել հավասարակողմ եռանկյուն, որի կողմը հավասար է $a_1+a_2+a_3$, և օգտվել 450 խնդրից: **452.** *Ցուցում:* Դիտարկել ինչպես ուռուցիկ, այնպես էլ ոչ ուռուցիկ քառանկյունների դեպքերը. Նրանցից չորս փայտասալիկով պատրաստել նոր սալիկ: **453.** *Ցուցում:* Դիցուք` ABCD-ն ուռուցիկ քառանկյուն է: Նկատի ունենալ, որ C գագաթը գտնվում է BAD անկյան ներսում, այդ իսկ պատճառով AC ճառագայթն անցնում է այդ անկյան միջով և, հետևաբար, հատում է BD ճառագայթը: Նմանապես դիտարկել BD ճառգայթը և ABC անկյունը: **454.** *Ցուցում:* Եթե տրված ABCD քառանկյունը ուռուցիկ է, ապա օգտվել 453 խնդրից: Եթե ABCD-ն ուռուցիկ չէ, և օրինակ AB ուղիղը հատում է CD կողմը M

կետում, ապա դիտարկել երկու դեպք. A-ն MB հատվածի կետ է, և B-ն AM հատվածի կետ է: **455.** $\frac{a}{4}$: *Ցուցում:* Դիցուք P-ն DE և AB ուղիղների հատման կետն է, DO||AC և O∈AB: Սկզբում ապացուցել, որ APE-ն, AOD-ն և POD-ն հավասարասրուն եռանկյուններ են: **456.** *Ցուցում:* Սկզբում ապացուցել $m_a<\frac{b+c}{2}$ և $m_a>\frac{a+b-c}{2}$ անհավասարություն-ները, որտեղ a-ն, b-ն, c-ն եռանկյան կողմերն են, $m_a$-ն՝ a կողմին տար-ված միջնագիծը: **457.** *Ցուցում:* Սկզբում ապացուցել, որ տրված քա-ռանկյան անկյունագծերը հատման կետով կիսվում են: **458.** Տրված ուղղին զուգահեռ ուղիղ: **459.** *Ցուցում:* Փոքր հիմքի միջնակետով տանել սրունքներին զուգահեռ ուղիղներ: **460.** *Ցուցում:* Նկատել, որ կիսորդների հատման կետերը ուղղանկյան գագաթներին միացնող հատվածներով ստացվում են ուղղանկյուն եռանկյուններ: **461.** *Ցուցում:* Դիցուք՝ $O_1$-ը, $O_2$-ը, $O_3$-ը, $O_4$-ը ABCD զուգահեռագծի AB, BC, CD և DA կողմերի վրա կառուցված քառակուսիների անկյունագծերի հատման կետերն են: Սկզբում ապացուցել $AO_1O_4$, $BO_1O_2$, $CO_2O_3$, $DO_3O_4$ եռանկյունների հավասարությունը: **462.** *Ցուցում:* AB ճառագայթի վրա անջատել AM հատվածին հավասար AN հատվածը, տանել MN հատվածը և AMN եռանկյան NS բարձրությունը: Այնուհետև ապացուցել, որ $\Delta ANS=\Delta MAD$ և $\Delta AKB=\Delta NMS$: **463.** $90^0$: *Ցուցում:* Դիցուք՝ $D_1$ կետը համաչափ է D կետին E կետի նկատմամբ: Սկզբում ապացուցել, որ $\Delta ACD_1$-ը հավասարասրուն ուղղանկյուն եռանկյուն է: **464.** $30^0$: *Ցուցում:* AM ճառագայթի վրա անջատել AK=AB հատվածը և, դիտարկելով BKC եռանկյունը, ապացուցել, որ K կետը համընկնում է M կետին: **465.** *Ցուցում:* Նախ ապացուցել, որ $\Delta BKP=\Delta ABC=\Delta CQT$: **466.** *Ցուցում:* Նախ կառուցել հավասարասրուն եռանկյուն, որի հիմքը հավասար է սեղանի հիմքերի գումարին, իսկ սրունքը՝ սեղանի անկյունագծին: **467.** ա) *Ցուցում:* Նախ ապացուցել, որ համաչա-փության առանցքը հատում է եռանկյան կողմերից մեկը:

## Մ ա կ ե ր ե ս ն ե ր

**468.** *Ցուցում:* Օգտվել ABC և ADC, APM և ATM, MQC և MRC եռանկյունների հավասարությունից: Հակադարձ պնդումն ապացու-ցելու համար ենթադրել, որ M կետը գտնվում է AC-ի վրա և ապացուցել, որ այդ դեպքում զուգահեռագծերի մակերեսները հավասար չեն: **469.** $\frac{1}{5}$: **470.** *Ցուցում:* Դիցուք՝ MN-ը CD կողմի

միջնակետով AB-ին տարված ուղղահայացն է, իսկ MP-ն՝ միջին գիծը: B կետով տանել AD-ին ուղղահայաց և դիտարկել MP և AB ներքնաձիգներով եռանկյունների նմանությունը: **471.** Ցուցում: Նախ ապացուցել, որ զուգահեռագծի մակերեսը, որի կողմը սեղանի փոքր հիմքն է, հավասար է այն երկու եռանկյունների մակերեսների գումարին, որոնք հարակից են այդ հիմքին և սեղանի սրունքներին: **472.** Ցուցում: Նախ ապացուցել, որ $S_{ABD}=S_{EDC}$ և $S_{BDK}=S_{CDK}$: **473.** Ցուցում: Ապացուցել, որ $S_{AKCM}=S_{KBMD}=\frac{1}{2}S_{ABCD}$: **474.** $2\sqrt{\frac{a^2+ab+b^2}{3}}$: Ցուցում: Դիցուք՝ AB-ն և AD-ն տրված անկյան կողմերը պարունակող ուղիղներին ուղղահայացներն են, իսկ C-ն AB և OD ուղիների հատման կետն է: Դիտարկել ADC և OBC ուղղանկյուն եռանկյունները: **475.** $\frac{\alpha}{2}$: Ցուցում: Նախ ապացուցել, որ DCK և DCM եռանկյունների մակերեսները հավասար են, որից կհետևի KM||DC և $\angle BKM=\angle BDC$: **476.** $\sqrt{a^2+c^2-b^2}$: Ցուցում: M կետով տանել ուղղանկյան կողմերին զուգահեռ ուղիղներ և դիտարկել առաջացած ուղղանկյուն եռանկյունները: **477.** Ցուցում: Դիցուք՝ AB=c, BC=a, BD=h: Օգտագործելով Պյութագորասի թեորեմը՝ ապացուցել, որ $MB=\sqrt{a^2+c^2-h^2}$ և $KB=\sqrt{a^2+c^2-h^2}$: **478.** Ցուցում: AC և CB կողմերին տանել OM և ON ուղղահայացները և ապացուցել, որ $OM=\frac{1}{3}CB$, $ON=\frac{1}{3}AC$: Այնուհետև օգտվել Պյութագորասի թեորեմից AOM, BON և COM եռանկյունների համար:

## Ն մ ա ն   ե ռ ա ն կ յ ո ւ ն ն ե ր

**479.** Ցուցում: ա) Ցույց տալ, որ $\angle AEF=\angle ADE$: բ) Նախ ապացուցել, որ DF=DE և AF=FE: Այնուհետև օգտվել AED և AFE եռանկյունների նմանությունից: **480.** $\frac{a}{\sqrt{2}}$: Ցուցում: Դիցուք՝ ABC-ն տրված եռանկյունն է, իսկ D-ն այն քառակուսու անկյունագծերի հատման կետն է, որը կառուցված է BC ներքնաձիգի վրա: CA ճառագայթի շարունակության վրա նշել E կետն այնպես, որ AE=CB, և E-ն միացնել D կետին: Ցույց տալ, որ $\Delta EAD=\Delta DCB$: **481.** Ցուցում: Դիցուք՝ E և F կետերը MP-ի և MQ-ի, OB-ի և OA-ի հետ հատման կետերն են: Օգտվել OPR և OFQ, OQS և OEP եռանկյունների նմանությունից՝ OEF և ORS եռանկյունների նմանությունը ապացուցելու համար: **482.** ա) $\angle A=75^0$,

$\angle B=135^0$, $\angle C=60^0$, $\angle D=90^0$: բ) *Ցուցում:* Նկատի ունենալ, որ ABP և DAB եռանկյունները նման են: **483.** *Ցուցում:* Դիցուք MN-ը տրված ABCD ուռուցիկ քառանկյան AD և BC կողմերի միջնակետերը միացնող հատվածն է: Նշել N կետի նկատմամբ D կետի համաչափ $D_1$ կետը և դիտարկել $ABD_1$ եռանկյունը: **484.** *Ցուցում:* Օգտվել 483 խնդրից: **485.** *Ցուցում:* Օգտվել 483 խնդրից: **486.** *Ցուցում:* ABC եռանկյան միջնագծերից մեկի ծայրակետերից տանել մյուս միջնագծերին զուգահեռներ և օգտվել այն բանից, որ առաջացած եռանկյունը հավասար է EFG եռանկյանը: **487.** *Ցուցում:* Նախ կառուցել որևէ հավասարասրուն եռանկյուն՝ ըստ տրված անկյան, ապա հիմքի շարունակության վրա տեղադրել բարձրությունը և ստացված կետը միացնել հիմքի հանդիպակաց գագաթին. օգտվել նմանության մեթոդից:

## Շրջանագիծ

**488.** *Ցուցում:* Օգտագործել տրված շրջանգծերի M կետով տարված ընդհանուր շոշափողը: **490.** *Ցուցում:* $O_1$ և $O_2$ կետերից BC ուղղին տանել $O_1H_1$ և $O_2H_2$ ուղղահայացները և $O_1H_1$ ու $O_2H_2$ զուգահեռ ուղիղների միջև եղած հեռավորությունը համեմատել $O_1O_2$ հատվածի երկարության հետ: **491.** Դիցուք՝ CD-ն շրջանագծի AB տրամագծին ուղղահայաց տրամագիծ է: Որոնելի կետերի բազմությունը բաղկացած է OC և OD հատվածների՝ որպես տրամագծերի վրա կառուցված երկու շրջանագծերից: **492.** *Ցուցում:* A կետը արտագծյալ շրջանագծի վրա գտնվելը ապացուցելու համար նախ հիմնավորել՝ $\angle ACB=\angle BAA$ : **493.** *Ցուցում:* Նախ ապացուցել, որ OE-ն AC հատվածի միջնուղղահայացն է: **494.** *Ցուցում:* Դիցուք XC>XA և XC>XB: XC հատվածի վրա տեղադրել XA հատվածին հավասար XD հատվածը: Հաշվի առնել, որ $\angle AXC=60^0$, և ապացուցել AXB և ADC եռանկյունների հավասարությունը: **495.** *Ցուցում:* Դիցուք՝ ABCD-ն տրված քառանկյունն է: Տանել $BB_1$ տրամագիծը և նախ ապացուցել, որ $AB_1=CD$: **497.** *Ցուցում:* Նախ կառուցել $P_2Q_2$ շառավիղով ու M կենտրոնով և O կենտրոնով OA շառավիղով երկու շրջանագիծ, որտեղ A-ն տրված շրջանագծի $P_1Q_1$ հատվածին հավասար որևէ լարի միջնակետն է: Այնուհետև օգտվել 496 խնդրից: **498.** *Ցուցում:* Նախ ապացուցել, որ փոքրագույնը այն լարն է, որն ուղղահայաց է տրված կետով անցնող տրամագծին:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԳԼՈՒԽ VIII
ՄԱԿԵՐԵՍ

---

Լրացված և փոխադրված կետերը 12-19, 26, 29, 31-33, 40, 41

Լրացված և փոխադրված խնդիրները 4-9, 14, 18-23, 33, 35-42, 44-46, 48-50, 53, 54, 59-62, 67-71, 79-82, 86-103, 123-135, 138-140, 143, 145, 150, 161, 163-168, 170, 178, 195-198, 200-213, 217, 220-244, 274, 275, 278-283, 286, 294-298, 306-310, 312-314, 316, 318-321, 324-340, 345, 353, 358-361, 385-388, 396, 399-403, 406-411, 413-416, 418, 421-425, 428, 435-437, 440, 443, 445-449, 492:

Աթանասյան Լևոն Սերգեյի
Բուտուզով Վալենտին Ֆյոդորի
Կադոմցև Սերգեյ Բորիսի
Պոզնյակ Էդուարդ Գեներիխի
Յուդինա Իրինա Իգորի

Հրատարակումը նախապատրաստվել է
ակադեմիկոս Ա. Ն. Տիխոնովի գիտական ղեկավարությամբ

# Երկրաչափություն

Հանրակրթական դպրոցի 7-րդ դասարանի դասագիրք

Թարգմանված է ռուսերեն 9-րդ հրատարակությունից:
Դասագիրքը համապատասխանեցված է առարկայական ծրագրին, օգտագործվել են «*Просвещение*» հրատարակչության տրամադրած լրացուցիչ նյութերը:

*Թարգմանությունը, փոխադրումները և խմբագրումը՝*
*Սարիբեկ Հակոբյանի*

*Մեթոդական մշակումը՝ Ռիտա Խաչատրյանի*
*Թարգմանության համադրումը՝ Գևորգ Ղարագեբակյանի*
*Համակարգչային ձևավորումը՝ Գոհար Խաչատրյանի*

Հրատարակիչ-տնօրեն՝ *Ս. Հ. [redacted]*
Հրատարակ. խմբագիր՝ *Գ. Ա. Ղարագեբակյան*
Վերստուգող սրբագրիչ՝ *Ռ. Մ. Հակոբյան*
Սրբագրիչ՝ *Ա. Խ. Մխիթարյան*
Հրատարակ. պատասխանատու՝ *Ա. Մ. Բլբուլյան*

*«ԱՍՏՂԻԿ-59»* հրատարակչություն (Երևան, Նորք, 2-րդ նրբանցք, տ. 32)
Տպագրված է «Տիգրան Մեծ» հրատարակչության տպարանում

